Byuzandian ev hay petakanut'iwne" [Byzantium and Armenian Statehood in the 10th-11th Centuries], by Hratch Bartikyan, in 34 pdf pages. This study apeared in the journal Lraber hasarakakan gitut'yunneri [Bulletin of Social Sciences] (Erevan, Armenia), 1(1996), pp. 17-29, and 2(1996), pp. 15-25.

# ԲՅՈՒԶԱՆԴԻԱՆ ԵՎ ՀԱՅ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ X—XI ԴԴ.

Հ. Մ. ԲԱՐԹԻԿՅԱՆ

*591 թ. Բյուզանդական կայսրության և Սասանյան Իրանի միջև Հայաստանի երկրորդ բաժանմամբ երկրի մեծագույն մասը մտավ կայսրության կազմի մեջ*: Թեև արաբական տիրապետության ժամանակ Հայաստանի նվաճված հողերը կազմեցին խալիֆայության նահանգներից մեկը, Բյուզանդիան մինչև վերջ դրանք համարում էր սեփականը, և երբ IX դ. կեսերից խալիֆայության աստղը գնալով մարում էր, Բյուզանդիան ջանում էր դրանք առնել իր ոլորտի մեջ: Սկզբնական շրջանում նա ստիպված էր հաշտվել Հայաստանում ստեղծված քաղաքական իրադրության հետ, ճանաչել այստեղ առաջացած պետական միավորների՝ հայկական մի շարք իշխանությունների գոյության փաստը: Դրանցից խոշորագույնը Շիրակի Բագրատունյաց պետությունն էր՝ իշխանաց իշխանի գլխավորությամբ, որ 884 թ. օգոստոսի 26-ին[1] իրեն հռչակեց համայն Հայաստանի թագավոր:*

*Բյուզանդական կայսրությունը հավանաբար այդ թվականին ճանաչեց Շիրակի Բագրատունյաց պետությունը, թեև հիմքեր չունենք բացառելու, որ Բյուզանդիան քաղաքական կապեր ու հարաբերություններ պիտի հաստատած լիներ դրանից առաջ էլ, երբ Շիրակին տիրում էր Բագրատունի իշխանաց իշխանը: Հարցերի հարցը, սակայն, այլ է: Կայսրությունը Շիրակի հայկական պետությունը 884/885 թթ. ճանաչեց որպես ինչ. իշխանությո՞ւն, թե՞ թագավորություն, պետության գլուխը՝ «իշխանաց իշխա՞ն» (ἄρχων τῶν ἀρχόντων), թե՞ թագավոր (βασιλεύς): Միջնադարյան հայ պատմիչներից ամենավաղը և ամենաարժանահավատը տվյալ հարցի լուսաբանման համար, պարզ է, Հովհաննես Դրասխանակերտցին է: Նրան կանդրադառնանք քիչ հետո: Այստեղ նշենք, որ այս դեպքերից շուրջ մեկ դար հետո Ստեփանոս Տարոնացի Ասողիկը ցույց է տալիս, որ հայոց թագավորության վերականգնումը տեղի ունեցավ «ի ձեռն Աշոտոյ Բագրատունւոյ, որ եղև յաւուրս Վասլի Յունաց թագաւորին և կամակցութեամբ նորին»[2]: Բյուզանդական կայսեր «կամակցութեամբ» թագավորեց նաև Աշոտ Ա-ի որդի Սմբատ Ա-ն[3]: Այս փաստը սոսկ վկայում է, որ Բյուզանդիան դեմ չէր հայոց թագավորության վերականգնմանը, դեմ չէր, որ հայերը նրանց «թագավոր» հորջորջեին, բայց ամենևին չի նշանակում, որ Բյուզանդիան նրանց βασιλεύς ճանաչեց՝ «թագավոր» բյուզանդական հասկացողությամբ:*

*Հայ հեղինակներից իմաստի առումով ամենաանառարկելի տվյալը հանդիպում է Վարդան Արևելցու և Կիրակոս Գանձակեցու՝ դեպքերից չորս դար անց գրած երկերում: Վարդանը գրում է, թե ամիրապետը (արաբ խալիֆան) «առաքէ թագ և հանդերձս և երիվարս: Զնոյն և կայսրն Վասիլ առաքէ»[4]: Այդ-*

---

** Զեկուցում ՀՀ ԳԱԱ Պատմության ինստիտուտի «Հայկական պետականությունը հին և միջին դարերում» գիտական նստաշրջանում 1993 թ. ապրիլին:*

*[1] Թվականի մասին տե՛ս Վ. Հ ա կ ո բ յ ա ն, Մանր ժամանակագրություններ 13—18-րդ դդ., հ. Բ, Երևան, 1956, էջ 156—162:*

*[2] Ս տ ե փ ա ն ո ս ի Տ ա ր օ ն ե ց ւ ո յ Ա ս ո ղ կ ա ն Պատմութիւն տիեզերական (այսուհետև՝ Ասողիկ), Ս. Պետերբուրգ, 1885, էջ 157:*

*[3] Նույն տեղում, էջ 159:*

*[4] Մ ե ծ ի ն Վ ա ր դ ա ն ա յ Բ ա ր ձ ր բ ե ր դ ե ց ւ ո յ Պատմութիւն տիեզերական (այսուհետև՝ Վարդան), Մոսկվա, 1861, էջ 117:*

պես է արտահայտվում նաև Կիրակոս Գանձակեցին. Վասիլը «դարձեալ թագ առաքեաց Աշոտոյ ի վերայ իսմայէլականին»[5]։ Այս պարզ նախադասությունները, ինչպես կտեսնենք, ձնագնդի պես աճեցին հայագետների աշխատություններում, հասնելով անհավատալի չափերի։ Նրանք հավատացած են, որ Բագրատունյաց հայոց թագավորությունը որպես այդպիսին ճանաչեց նաև Բյուզանդական կայսրությունը։ Հայագիտության մեջ այդ կարծիքի հիմքը դրեց Միքայել Չամչյանը, որը գրեց, թե խալիֆայից հետո Վասիլ կայսրը «ինքն ևս առաքեաց նմա թագ պատուական և զարդս մեծագին՝ համարելով նրա արժանի այնմ պատուոյ. և ետ նմա զամենայն անուանս պատուոյ իշխանութեան, որ ի թագաւորութեան Յունաց»[6]։

Արդ տեսնում ենք, թե Կիրակոս Գանձակեցու «թագ առաքեաց Աշոտոյ» բառերը ինչքան աճեցին, որոնց մասին աղբյուրներում ակնարկ անգամ չկա։ Կարիք չկա այստեղ մեկ առ մեկ և հանվանե հիշատակել բոլոր հայ պատմաբաններին, որոնք որդեգրեցին Միքայել Չամչյանի կարծիքը, տալով հիշյալ «ակտի» մասին իրենց բացատրությունները։ Բավական է կանգ առնել մի քանիսի վրա։

Մաղաքիա արքեպիսկոպոս Օրմանյան. «Վասիլ կայսր... լավ չտեսավ թագավորական աստիճանի և պատվո շնորհմամբ Հայերուն արաբական տիրապետության հետ ներքնապես կապվելը և փութաց ինքն ալ յուր կողմեն սիրելի երևալ Հայոց, և անոնց համակրությունը վառ պահել։ Այս նպատակով ինքն ալ յուր կողմեն «դարձեալ թագ առաքեաց Աշոտոյ ի վերայ իսմայէլականին»[7]։

Լեո. «Մութամիդ-Բիլլահ խալիֆը... հանձնարարեց արքայական թագ ու զգեստ տանել Աշոտին և հայտարարել նրան Հայաստանի թագավոր։ ...Աշոտին Հայաստանի թագավոր ճանաչեց նաև Բյուզանդիան»[8]։

Ֆրանսիացի պատմաբան Ռ. Գրուսեն, հենվելով Վարդանի և Կիրակոսի հաղորդածի վրա, գրում է, թե «Բաղդադի արքունիքի որոշումից հետո Կոստանդնուպոլսի արքունիքը չուզեց պարտական մնալ և Վասիլ Ա-ն, ինչպես խալիֆա Մոթամիդը, Աշոտին թագավորական թագ ուղարկեց»[9]։

Ն. Ադոնցը կարևորություն չի տալիս Աշոտին Վասիլի կողմից թագ ստանալու մասին ուշ հեղինակների հաղորդած տվյալներին։ Նշելով խալիֆա Մութամիդից ուղարկված թագի և Աշոտի թագադրվելու արարողության մասին, նա գրում է. «Վասիլ կայսրը շտապեց ապահովել Աշոտի հաջողությունը, «խաղաղութեան, նուաճութեան և սիրոյ» դաշինք հաստատելով և «որդի սիրելի անուանելով» և «հաղորդակից կացուցանելով յամենայն թագաւորութիւնս տէրութեան իւրոյ»։ Վերջին խոսքերիս իմաստն է՝ առնել Աշոտին կայսրության հովանավորության տակ»[10]։

Հ. Մանանդյանը, որ բազմիցս նշել է Աշոտ Ա Բագրատունու՝ արաբ խալիֆա Մութամիդից թագավորական տիտղոս, թագ և թագավորական զգեստներ ստանալու մասին, Բյուզանդիայի կողմից նման վերաբերմունքի արժանանալը շատ տեղերում չի նշում[11]։ Միայն «Հայաստանի առևտրի և

---

5 Կիրակոս Գանձակեցի, Պատմություն հայոց (այսուհետև՝ Կիրակոս), աշխատասիրությամբ Կ. Ա. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1961, էջ 80։

6 Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, հ. Բ, Վենետիկ, 1785, էջ 703։

7 Մաղաքիա արքեպիսկոպոս Օրմանյան, Ազգապատում, մասն Ա, Կոստանդնուպոլիս, 1913, էջ 994 (հղումը՝ Կիրակոսից է)։

8 Լեո, Հայոց պատմություն, հ. Բ, Երևան, 1947, էջ 522։

9 René Grousset, Histoire de l'Arménie. Des origines a 1071, Paris, 1947, p. 395.

10 Ն. Ադոնց, Բագրատունյաց փառքը։ Պատմական ուսումնասիրություններ, Պարիս, 1948, էջ 86։

11 Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Բ, Բ մասի նյութեր, Երևան, 1960, էջ 40, 64, 234։

քաղաքների մասին» գրքում նա հստակ գրում է, որ Աշոտ Բագրատունին «887/89 թվին (!)Մուտամիդ խալիֆից (870—892) ստացավ թագ և թագավորի տիտղոս։ Այդ տիտղոսը ճանաչել էր նաև Բարսեղ Ա-ը»[12]։

Աշոտ Հովհաննիսյանը գրում է, որ «խալիֆ Մութամիդը... թագ հղեց նրան (Աշոտին—Հ. Բ.)։ Մերձիմահ Վասիլ կայսրին մնում էր միայն ողջունել և վավերացնել (!) իր «սիրելի որդի» Աշոտի թագադրությունը[13]։

Հարցը հատուկ և հանգամանորեն ուսումնասիրել է Կ. Յուզբաշյանը: Նա համաձայն է տողերիս հեղինակի այն կարծիքին, որ բյուզանդական պաշտոնական փաստաթղթերում Բագրատունի և Արծրունի թագավորները կոչվում են ἄρχων τῶν ἀρχόντων (իշխանաց իշխան)[14], և միանգամայն իրավացիորեն Վարդանի և Կիրակոսի՝ Աշոտ Ա-ին բյուզանդական Վասիլ Ա կայսեր կողմից թագ ուղարկելու մասին տեղեկությունները համարում է «ուշ շրջանի ենթադրություններ, որոնք առաջացել են արաբական թագերի հիշողությունների ազդեցությամբ»[15]. Թեև վերջերս հրատարակված իր մենագրության մեջ նա այդքան էլ վստահ չի պնդում այդ միտքը և այդ «ակտի» գոյությունը չի բացառում[16]։

Վերջապես կանգ առնենք նորերս լույս տեսած և մի մենագրության վրա[17], որում քննության են առնված նաև սույն հոդվածում արծարծված հարցերը։ Հեղինակը՝ Ռ. Մաթևոսյանը, հենվելով Վարդանի ու Կիրակոսի և տվյալ հարցի համար որևէ արժեք չներկայացնող հայսմավուրքների վրա (1467 թ., XVI դ. և 1806 թ. արտագրված), պնդում է, թե «որևէ տարակուսանք չի կարող լինել», որ Վասիլը Աշոտին թագ է ուղարկել, և դա հաստատում է Անանուն Զրուցարրի առասպելապատում գրքի վկայությամբ, համաձայն որի Ռոմանոս Ա Լեկապենոս կայսրը (920—944 թթ.) Աշոտի որդի Սմբատ Ա-ին (890—913 թթ.) թագ է ուղարկել, հետևաբար «անտարակուսելի է, որ Աշոտը ևս ստացել է թագ»[18]։ Նա ի վերա այսր ամենայնի չի նկատում, որ Ռոմանոս Լեկապենոսը թագավորել է (Կոնստանդին Ծիրանածինի հետ) Սմբատի նահատակությունից յոթ տարի անց։

Վասիլ Ա-ի կողմից Աշոտ Ա-ին թագ ուղարկելու և նրան թագավոր ճանաչելու վարկածը մուտք գործեց «Հայ ժողովրդի պատմության» ակադեմիական հրատարակության Գ հատոր[19], բարձրագույն ուսումնական հաստատությունների և դպրոցական դասագրքեր[20]։

Ստորև մանրամասն կխոսենք այս կարծիքի անհիմն լինելու մասին, բայց այստեղ ընդգծենք, որ եթե հայ և օտար հայագետներին կարելի է մի

---

[12] Я. А. Манандян. О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен. Ереван, 1954. с. 202.

[13] Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, հ. Ա, Երևան, 1957, էջ 38։

[14] Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 6, Բյուզանդական աղբյուրներ, գիրք Բ, Կոստանդին Ծիրանածին (այսուհետև՝ Կոստանդին Ծիրանածին), թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1970, էջ 213։

[15] Կ. Ն. Յուզբաշյան, «Բագրատունյաց շրջանի» Հայաստանը միջազգային իրավունքի տեսակետից [Պատմա-բանասիրական հանդես (այսուհետև՝ ՊԲՀ), 1975, № 1, էջ 48—49]։

[16] К. Н. Юзбашян, Армянские государства эпохи Багратидов и Византия IX—XI вв., М., 1988, с. 89.

[17] Ռ. Ի. Մաթևոսյան, Բագրատունյաց Հայաստանի պետական կառուցվածքն ու վարչական կարգը, Երևան, 1990։

[18] Նույն տեղում, էջ 99։

[19] Հայ ժողովրդի պատմություն, հ. Գ, Երևան, 1976, էջ 23։

[20] Հայ ժողովրդի պատմություն 12 պրակով, պր. 4, Ս. Պողոսյան, Հայաստանը զարգացած ֆեոդալիզմի շրջանում, 9—13-րդ դդ., Երևան, 1958, էջ 13 (Ս. Պողոսյանը թագ ուղարկած արաբ խալիֆային անվանում է Ահմեդ Աբուլ-Աբաս), Հայ ժողովրդի պատմություն, խմբագրությամբ Մ. Գ. Ներսիսյանի, Երևան, 1972, էջ 207։

պահ արդարացնել, քանի որ նրանք բյուզանդագետ չեն, ապա որոշ անվանի բյուզանդագետների՝ այդ միտքը որդեգրելը ոչ մի կերպ բացատրելի չէ։ Այսպես, Գ. **Օստրոգորսկին** գրում է. «Աշոտ Ա-ը թագավոր ճանաչվեց խալիֆայի (885 թ.), ինչպես նաև բյուզանդական կայսեր (887 թ.) կողմից»[21]։ Իսկ Ա. **Կաժդանը** կրկնում է այդ միտքը. «Խալիֆայի փոխարքան 886 թ. Աշոտ Բագրատունու գլխին թագ դրեց, ճանաչելով Հայկական թագավորության ձևական (!) գոյությունը... Վասիլ Ա-ն իր կողմից նրան **թագ ուղարկեց**»[22]։

Ա. Կաժդանը նույն հատորի երկրորդ մասի 4-րդ գլխում միանգամայն իրավացի գրում էր. «Աստվածային կայսրը համարվում էր տիեզերքի՝ Օյկումենեի տերը։ Նա միակ ճշմարիտ տիրակալն էր, այն դեպքում, երբ մնացած բոլոր իշխողները սոսկ արխոնտներ, «կառավարիչներ» էին։ Բյուզանդական քաղաքական տեսությունը երկար ժամանակ չէր համաձայնում «վասիլևս» (թագավոր—Հ. Բ.) տիտղոսը տալ Կարլոս Մեծի հաջորդներին»[23]։

Ո՞վ կարող էր այդ մասին ամենից քաջատեղյակը լինել, քան դեպքերին ժամանակակից ու գլխավոր դերակատարներից մե՛կը՝ կաթողիկոս և պատմիչ Հովհաննես Դրասխանակերտցին։ Ճիշտ է, նա կաթողիկոսական աթոռին բազմեց Աշոտ Ա-ի թագադրությունից 14 տարի անց (898—929 թթ.), բայց հազիվ թե այն ժամանակ շարքային վանական կամ քահանա լիներ և կամ քաղաքականությունից հեռու կանգնած կիսագրագետ մի անձնավորություն։ Նա բարձրաստիճան հոգևորական էր, զարգացած, խոր գիտելիքների տեր մարդ։ Նա իր մեծարժեք «Պատմության» մեջ մանրամասն գրում է Բագրատունիների թագավորության հռչակման փաստի մասին, կանգ առնում նրա միջազգային ճանաչման հարցի վրա։ Խալիֆան, գրում է նա, ոստիկան Հիսեի միջոցով «առաքէ.... Աշոտոյ **թագ թագաւորական**... և այլ ևս **զգեստս թագաւորականս**»[24]։ Իսկ երբ խոսքը վերաբերում է Բյուզանդիային, պատմիչը գրում է. «Այլև մեծ կայսրն Յունաց՝ Բարսեղ, ոչ փոքր ինչ **պայման խաղաղութեան և նուաճութեան և սիրոյ** հաստատէր ընդ արքային մերոյ Աշոտոյ՝ **որդի սիրելի զնա անուանելով**»[25]։ Սա Շիրակի պետության պաշտոնական ճանաչման, երկու պետությունների միջև դիվանագիտական հարաբերությունների հաստատման փաստաթուղթ է։ «Պայման խաղաղութեան և նուաճութեան և սիրոյ»-ն, ժամանակակից տերմինով արտահայտած, կլինի խաղաղ գոյակցության, բարեկամության և համագործակցության պայմանագիր։ Այստեղ խոսք չկա պետության գլխին թագավոր ճանաչելու մասին, այդպիսի կետ բացակայում է։ Իսկ «որդի սիրելի»-ն սովորական դարձվածք չէր. այն, ինչպես կտեսնենք, ուներ որոշակի նշանակություն։

Եթե մի պահ ենթադրենք անգամ, որ Վասիլ կայսրը Աշոտ Ա-ին թագ է ուղարկել (իսկ դա բացառված է), ապա այս դեպքում ևս նրան βασιλεύς չէր ճանաչի։ Ինչպես տեսանք վերևում, բյուզանդական կայսերական իդեալի համաձայն աշխարհում գոյություն ունի մեկ թագավոր— βασιλεύς, նա, ով

---

[21] G. **Ostrogorsky**, Histoire de l'Etat Byzantin, Paris, 1956, p. 265 Գ. Օստրոգորսկին հետևողականորեն պաշտպանում է Բյուզանդիայի կողմից բուլղար իշխան Սիմեոնի՝ **թագավոր** հռչակվելը և ճանաչվելը։ Նա ուզում է կասկածի տակ դնել բյուզանդական կայսերական իդեան, թե կա մեկ վասիլևս-թագավոր՝ բյուզանդական կայսրը։ Գուցե իր այդ միտքը նա ուզում է լրելյայն հաստատել նաև Աշոտի օրինակով։ Այդ մասին տե՛ս ստորև։

[22] История Византии в трех томах, т. II, М., 1967, с. 191. Հասկանալի չէ, թե ինչու է Ա. Կաժդանը հայոց թագավորության գոյությունը «ձևական» համարում, երբ մի քանի տող առաջ գրել է, թե «869 թ. Հայաստանը փաստորեն անկախություն ստացավ»։ Գուցե формально (ձևականորեն)-ը շփոթված է формальное (ձևական)-ի հետ։

[23] Նույն տեղում, էջ 157։

[24] Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն Հայոց (այսուհետև՝ Հովհաննես Դրասխանակերտցի), Թիֆլիս, 1912, էջ 139։

[25] Նույն տեղում, էջ 140, նաև 285։

նստում է Կոստանդնուպոլսում։ Մնացած բոլոր վեհապետները, Արևելքում թե Արևմուտքում βασιλεύς չեն կարող լինել։ Դեպքերից վեցից ավելի տասնամյակ անց, բայց X դ. սկզբներին (913 թ. հետո) կազմված մի փաստաթղթի հիման վրա ստեղծված և Կոստանդին Ծիրանածին կայսեր գրչին պատկանող «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» (De cerimoniis aulae byzantinae) գրքում հիշված են 53 պետություններ և նրանց ղեկավարները (բացի հոգևոր պետերից)։ Գրքում ցույց է տրված, թե Կոստանդնուպոլսից ուղարկվող պաշտոնական գրությունններում ինչպես պետք է կոչել յուրաքանչյուրին և ինչպես պետք է նրան դիմել։ Նրանցից միայն մեկը՝ Բուլղարիայի գլխավորը կոչվում է βασιλεύς, այն էլ «վերջերս» հատուկ նշումով. «Բուլղարիայի՝ կամավն աստուծո իշխանին (ἄρχων) ...Կոստանդին և Ռոմանոս հավատացյալ ի նույն աստված հռոմայեցիների կայսրերը ցանկալի և հոգեկան որդի, կամավն աստուծո Բուլղարիայի ամենաքրիստոնյա ժողովրդի իշխանին»: Վերջերս՝ գրվում է այսպես. «Կոստանդին և Ռոմանոս հռոմայեցիների ի Քրիստոս աստված բարեպաշտ կայսրեր, մեր ցանկալի որդուն, տեր այսինչին, Բուլղարիայի թագավորին»[26]: Որով, Բագրատունյաց թագավորության հռչակման ժամանակ, դրանից տասնամյակներ անց, Բյուզանդիայի համար աշխարհում կար մեկ թագավոր— βασιλεύς. բյուզանդական կայսրը։

Կոստանդին Ծիրանածինի «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» գրքի տվյալներով կայսրությունը ճանաչում էր և այսօրվա հասկացողությամբ դիվանագիտական հարաբերություններ էր հաստատել հայկական հետևյալ իշխանությունների և, հայոց հասկացողությամբ, թագավորությունների հետ. Մեծ Հայք (Μεγάλη Ἀρμενία), այն է՝ Բագրատունյաց թագավորություն, Վասպուրական, Կողովիտ, Տարոն, Մոկք, Անձևացիք, Սյունիք, Վայոց Ձոր, Խաչեն, Սևորդիք։ Ընդ որում, բոլորի գլուխները կոչված են ἄρχων (իշխան), բացառությամբ Մեծ Հայքի վեհապետի, որ կոչված է ἄρχων τῶν ἀρχόντων —իշխանաց իշխան։ Աշոտ Ա Բագրատունին, նրա որդի Սմբատը. վերջինիս որդի Աշոտ Բ Երկաթը, Կոստանդին Ծիրանածինի մի այլ՝ «Կայսրության կառավարման մասին» գրքի 44-րդ գլխում կոչված են ἄρχων τῶν ἀρχόντων —իշխանաց իշխաններ։ Բերենք այդ աշխատության մեզ հետաքրքրող հատվածն ամբողջությամբ. «Իշխանաց իշխան Աշոտից (Աշոտ Ա—Հ. Բ.) առաջ, (նա Պարսկաստանի ամիրա Ապոսատայի (ամիրա Յուսուֆ աբու Կասիմ իբն-ալ Սաջը—Հ. Բ.) կողմից գլխատված իշխանաց իշխան Սմբատի հայրն էր, որն ունեցավ երկու որդի՝ Աշոտին (Աշոտ Բ Երկաթը—Հ. Բ.), որն իրենից հետո դարձավ իշխանաց իշխան, և Ապասակին (թագավոր Աբասը—929—953 թթ.—Հ. Բ.), որն հետագայում մագիստրոսի աստիճանն ստացավ), այդ երեք ամրոցները՝ Պերկրին, Խալիատը և Արզեսը (Բերկրին, Խլաթն ու Արճեշը—Հ. Բ.) գտնվում էին Պարսկաստանի (խալիֆայության—Հ. Բ.) տիրապետության տակ»[27]։

---

26 Կոստանդին Ծիրանածին, էջ 153։ Առաջին բուլղար իշխանը, որ 913 թ. թագավոր հռչակվեց, Սիմեոնն էր (893—927 թթ.)։ Բաղում ուսումնասիրողներ, սակայն, գտնում են, որ դա ոչ թե կայսրության կողմից ճանաչում էր, այլ Սիմեոնի ինքնահռչակումը։ Պատրիարք Նիկողայոս Միստիկոսը Սիմեոնի գլխին թագ չդրեց, այլ իր ἐπιρριπτάριον -ը՝ հոգևորականի հանդերձը վրան գցեց։ «Թագավոր տիտղոսը երբեք նրան չճանաչվեց և առավել ևս նրան չտրվեց Բյուզանդիայի կողմից»։ Հարցի և ռամաթիվ թեր ու դեմ կարծիքների մասին մանրամասն տե՛ս Ἀ. Σταυρίδου-Ζαφράκα, Ἡ συνάντηση Συμεὼν καὶ Νικολάου Μυστικοῦ (Αὔγουστος 913) στὰ πλαίσια τοῦ βυζαντινοβουλγαρικοῦ ἀνταγωνισμοῦ, Θεσσαλονίκη, 1972, σελ. 68 κέξ.

27 Կոստանդին Ծիրանածին, էջ 10։

Կան հարցը հաստատող և այլ փաստեր։ Այսպես, դեպքերին ժամանակակից Կոստանդնուպոլսի պատրիարք Նիկողայոս Միստիկոսի (901—907, 912—925 թթ.) նամակում, հասցեագրված Սմբատ Ա Բագրատունուն, վերջինս կոչված է ἄρχων τῶν ἀρχόντων[28] —իշխանաց իշխան։ Վերջապես, Հովհաննես Ա Չմշկիկ կայսեր (969—976 թթ.)՝ Աշոտ Գ Բագրատունուն (953—977 թթ.) ուղղված նամակում (974 թ. գրված), որը հունարենից հայերեն է թարգմանվել Բագրատունիների արքունիքում, և նրա տեքստն օգտագործել է Հակոբ Սանահնեցին[29], նրա միջոցով էլ՝ Մատթեոս Ուռհայեցին, հասցեատերը կոչված է «Աշոտ շահնշահ Հայոց Մեծաց և իմ հոգեկան զաւակ»[30]։ Եթե վերականգնենք նամակի հունարեն վերնագիրը (Ուռհայեցու մոտ պահպանվել է նրա հայերեն թարգմանությունը), կստանանք. Ἀσώτιος ἄρχων τῶν ἀρχόντων τῆς Μεγάλης Ἀρμενίας καὶ ἐμὸν πνευματικὸν τέκνον «իշխանաց իշխան Հայոց Մեծաց և իմ հոգեկան զավակ», այսինքն, այն, ինչ ցույց է տրված «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» գրքում։ Քանի որ Հովհաննես Ա Չմշկիկի՝ Աշոտ Գ Բագրատունուն ուղղված 974 թվակիր նամակում առկա է «իշխանաց իշխանը», որպես Բագրատունի թագավորի պաշտոնական անվանում (հանգամանք, որը ժխտում է 929-ից հետո Բագրատունիներին այն վերաբերելու մասին Կ. Յուզբաշյանի տեսությունը)։ Վերջինս դրա բացատրությունն էլ է գտնում։ «Հիմքեր չկան (!),—գրում է նա,—մտածելու, որ (իշխանաց իշխան) տիտղոսը վերադարձավ (!) Բագրատունիներին»[31]։ Եվ բերում է դեռևս 1870 թ. Ա. Ռամբոյի հայտնած կարծիքը, թե Չմշկիկի նամակի թարգմանության «շահնշահը» իբր հունարեն πρῶτος-ն է՝ («առաջինը»)։ Եթե Չմշկիկի նամակում πρῶτος էր, ապա հայը ինչո՞ւ պիտի թարգմաներ «շահնշահ»։

Վասպուրականի վեհապետը ևս Կոստանդին Ծիրանածինի երկում կոչված է ἄρχων (իշխան), հետևյալ նշումով. «որ այժմ իշխանաց իշխանի պատիվն է ստացել»[32]։ Այստեղ արձանագրված է Գագիկ Արծրունու՝ 908 թ. թագավոր հռչակվելու փաստը։ Վասպուրականի վերջին թագավորն անգամ, Սենեքերիմ Արծրունին, Հովհաննես Սկիլիցեսի երկում ἄρχων (իշխան) է կոչված[33]։

Այսպիսով, մենք ունենք միանգամայն հավաստի փաստեր, որ բյուզանդական արքունիքը թագավոր (βασιλεύς) չի կոչել Բագրատունիներ Աշոտ Ա-ին, Սմբատ Ա-ին, Աշոտ Բ Երկաթին, Աբաս Բագրատունուն (սրան իշխանաց իշխան էլ չի կոչել, այլ պարզապես մագիստրոս) և Աշոտ Գ Ողորմածին։ Հովհաննես Սկիլիցեսից հայտնի է, որ Հովհաննես-Սմբատ Բագրատունին ևս թագավոր չի կոչված, անգամ իշխան (ἄρχων), այլ շատ հասարակ՝ «Անիի տոպարխ» (τοῦ Ἀνίου τοπάρχης)[34], իսկ նրա եղբայր Աշոտը, ինչ-

---

[28] Nicholas I Patriarch of Constantinople Letters. Greek Text and English Translation by R. J. H. Jenkins and L. G. Westerink. Dumbarton Oaks Texts two, Washington, 1973, p. 446.

[29] Լ. Խաչիկյան, Հակոբ Սանահնեցի՝ ժամանակագիր 11-րդ դարի (Բանբեր Երևանի համալսարանի, 1971, № 1, էջ 36—37)։

[30] Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն (այսուհետև՝ Մատթեոս Ուռհայեցի), Վաղարշապատ, 1898, էջ 19։

[31] К. Н. Юзбашян, նշվ. աշխ., էջ 86։

[32] Կոստանդին Ծիրանածին, էջ 151։

[33] Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 10, Բյուզանդական աղբյուրներ, գիրք Գ, Հովհաննես Սկիլիցես (այսուհետև՝ Հովհաննես Սկիլիցես), թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1979, էջ 86։

[34] Նույն տեղում, էջ 146։

պես կտեսնենք ստորև, Մեծ Հայքի էքսուսիարխ։ Այստեղ նշենք, որ Բագրատունի և Արծրունի թագավորներից շատ ավելի մեծ կշիռ ունեցող Կիլիկյան Հայաստանի թագավորը, որ իսկապես Բյուզանդիայից թագ ստացավ, բյուզանդական բոլոր հայտնի փաստաթղթերում կոչված է ῥήξ (rex) և միայն ῥήξ: Βασιλεύς-ի և ռեքսի տարբերությունը ցույց է տրված բյուզանդական պատմիչ Հովհաննես Կիննամոսի գրքում։ Նա գրում է. «Լատինները βασιλεύς-ին (թագավորին) իմպերատոր են սովորաբար կոչում, նկատի ունենալով, որ նա գերագույն իշխանության տերն է. իսկ երկրորդ կարգի տիրակալներին ῥήξ են անվանում»[35]։ Ուստի, ճիշտ չէ պնդել, որ Բյուզանդիան Աշոտ Ա-ին թագավոր (βασιλεύς) ճանաչեց և նրան թագ ուղարկեց։ Հովհաննես Դրասխանակերտցու լռությունն էլ փաստ է՝[35] argumentum ex silentio: Բյուզանդիան հայոց թագավորներին βασιλεύς չի ճանաչել և թագավորական թագ չի ուղարկել Հետագայում ևս։ Սրա ապացույցն էլ ունենք նյութական մշակույթի հուշարձաններում։ Աղթամարի տաճարի քանդակների թվում կա նաև Գագիկ Արծրունու քանդակը։ Նրա գլխին թագ չէ, այլ արաբական չալմա։ Սանահնի և Հաղպատի վանքերի պատերին պահպանվել է Սմբատ Բ թագավորի քանդակը, սրա գլխին ևս չալմա է։ Վերջապես Անիում գտնված Գագիկ Ա Բագրատունու արձանի գլխին էլ թագ չկա, այլ նույն արաբական չալման։ Եթե 908 թ. թագավոր հռչակված Գագիկ Արծրունու վերաբերյալ դա բացատրենք Արծրունիների՝ դեռևս խալիֆաթից կախման մեջ լինելու հանգամանքով, ապա ինչպե՞ս բացատրենք Գագիկ Ա Բագրատունու դեպքում, որ թագավոր կոչվեց Բագրատունյաց թագավորության հռչակումից հարյուր և ավելի տարիներ անց, երբ խալիֆաթից կախման մեջ լինելու մասին այլևս խոսք լինել չի կարող։

Քանի որ խոսվեց Բագրատունյաց թագի վերաբերյալ, անհրաժեշտ ենք գտնում կանգ առնել Ն. Մառի այդ առթիվ արտահայտած կարծիքի վրա, որն անհավանական ենք համարում։ Ելնելով Վարդանի պատմության մեջ առկա հիշատակությունից, թե իբր Վասիլ Ա կայսրը Աշոտ Ա Բագրատունուց թագ է խնդրել և նկատի ունենալով այն, որ Արշակունիների ժամանակ Բագրատունիները թագադիր էին, Ն. Մառը համատացած է, որ Արշակունի թագավորների թագը, Արշակունիների անկումից հետո դարեր շարունակ պահվում էր Բագրատունիների մոտ և ուղարկվել է Վասիլին։ Բայց Բագրատունիները թագավորության արարողությունը կատարողներն էին, դա մի՞թե նշանակում է նաև, որ արքայական թագը նրանց մոտ էր պահվում։ Կարծում ենք, որ թագը հենց Արշակունիների գանձարանում պիտի պահվեր։ Թագադիրը միաժամանակ թագապահ չէր։ Շարունակելով իր միտքը, Ն. Մառը կարծում է, որ եթե անգամ Վասիլին ուղարկված թագը հենց Արշակունիներից եկածը չէ, ապա Բագրատունիների թագը հիշեցնում էր կամ հավակնում էր հիշեցնել Արշակունիների թագը։ «Որով,—գրում է Ն. Մառը,—Բագրատունիների այս թագավորական թագը հանդիսանում էր Բագրատունիների՝ Արշակունիներից առաջացած թագավորական իշխանության էմբլեմը, արտահայտությունն այն բանի, որ Անիի Բագրատունիները Հայաստանում վերականգնում էին Արշակունյաց թագավորությունը»[36]։

Եթե IX դ. վերջին գոյություն ունենար Արշակունյաց թագը կամ նրա նմանությամբ ստեղծվածը, ապա Բագրատունի արքաներն իրենց գլխին ինչո՞ւ իսլամական չալմա պիտի դնեին։ Ինչ էլ լինի, Ն. Մառի տեսակետը ոչնչով ապացուցել հնարավոր չէ։ Վերջապես, եթե գոյություն ունենար քրիստոնյա պետությունից ստացած՝ թագ, վրան Քրիստոսի խաչը, ապա Աշոտ

---

[35] Ioannis Cinnami, Epitome rerum ab Ioanne et Alexio Comnenis gestarum. rec. Augustus Meineke, Bonnae, 1836, p. 69.

[36] Н. Я. Марр, Ани, Ереван, 1939. с. 109. 112—113.

Ա-ն ինչո՞ւ իր գլխին չալմա պիտի դներ։ Պատահական չէ, որ Հովհաննես Դրասխանակերտցին Կոստանդին Ծիրանածին կայսրին գրած նամակում խուսափում է Սմբատին թագավոր կոչելուց. դա կխրտնեցներ կայսրին, այլ պարզապես անվանում է «բոլորից արեելեայցս գլխաւոր», «որ հոգևորապէս արժանացաւ անուանիլ ի ձէնջ որդի ձեզ ծառայն ձեր»[37]։ «Արևելքի» բազմաթիվ իմաստներից, որ հանդիպում ենք հայկական և բյուզանդական աղբյուրներում[38], մեկն էլ բյուզանդական արքունիքի ընդունածն է՝ Μεγάλη Ἀρμενία (Մեծ Հայքը)։ Հովհաննես Դրասխանակերտցին «Արևելք» ասելով հավանաբար դա նկատի ունի, թեև բացառված չէ, որ դրա տակ նա հասկանում է նաև Շիրակի Բագրատունիներից վասալական կախման մեջ գտնվող մյուս իշխանությունները, այդ թվում աղվանից, վրաց և եգերացվոց իշխանությունները։ Կաթողիկոսը կայսրից խնդրում է, որ նա փրկի իր՝ կայսեր «զվիճակ ժառանգութեան»[39], այսինքն, արտահայտվում է այնպես, ինչպես ընդունված է բյուզանդական արքունիքում։ Դեպքերից 250 տարի անց, երբ Կիլիկիայի իշխան Լևոն Ա-ը (1129—1137 թթ.) փորձեց թագավորական թագ կապել, կարմիր սանդալներ հագնել՝ թագավորական իշխանության նշանակները, դա գազազեցրեց կայսրին, որի տրամադրությունններն արտահայտեց նրան ներբողող Միքայել Իտալիկոսը. «Արդ, ի՞նչ կոչեմ քեզ, ով բարբարոս հայ, որ ճիշտ լինի։ ...Դու թագավո՞ր, քե՞զ դիադեման, քե՞զ սանդալները։ Մի՞թե չէիր հասկանում, որ այդպես վարվելով քո վրա ես հրավիրում կայսեր շանթերը։ Քո ամբարտավանությունը ավելի մեծ է, քան Իքսիոնինը, գործածդ լպրշությունը՝ ավելի մեծ, քան Տանտալոսինը, ո՛վ դու իսկական Սալմոնևս»[40]։

Հենց այս փաստն էր, որ առիթ դարձավ բյուզանդական բանակների Կիլիկիա ներխուժման, Լևոն իշխանի և նրա որդի Թորոսի գերեվարման և Կիլիկիայի հայկական իշխանության ժամանակավոր վերացման։

Արդ, Բյուզանդական կայսրությունն այդ «իշխանաց իշխաններին» ճանաչո՞ւմ էր որպես անկախ պետության ինքնիշխան վեհապետներ։ Հովհաննես Դրասխանակերտցու նամակում, ինչպես տեսանք, Սմբատ Ա-ի վերաբերյալ ասված է, որ հայոց թագավորը կայսրից «արժանացաւ անուանիլ... որդի ձեզ ծառայն ձեր»։ Բյուզանդական աղբյուրներում ևս այդ միտումը կա։ Այլ հարց է, թե դա ինչքանով էր իրականությանը համապատասխանում։ Գագիկ Բ Բագրատունին, ըստ Հովհաննես Սկիլիցեսի, «թեև շարունակում էր հռոմայեցիների հետ խաղաղություն ու զինակցություն պահպանել, բայց իր ձեռքում էր պահում նաև հորենական իշխանությունը և չէր ուզում այն հռոմայեցիներին զիջել, հակառակ հոր թողած փաստաթղթի[41]։ ...Գագիկը, թեև իրեն հռոմայեցիների ծառան էր խոստովանում, չէր ուզում հրաժարվել հորենական իշխանությունից»[42]։ Այնուամենայնիվ, փաստ է, որ կայսրությունը նրանց համարում էր իր վասալները։ Այսպես, ըստ բյուզանդական արքունիքի հասկացողության, «քանի որ իշխանաց իշխանը հռոմայեցիների կայսեր ծառան է համարվում, որովհետև [կայսրն է] նշանակում նրան և ընձեռում այդ պատիվը, ապա պարզ է, որ նրա տիրապետության

---

37 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 276—277։

38 Տե՛ս В. А. Арутюнова-Фиданян. К вопросу о термине «Восток» в конце X—XI вв. (Византийские очерки. Труды советских ученых к XVI международному конгрессу византинистов. М., 1982, с. 114 и сл.).

39 Հովհաննես Դրասխանագերտցի, էջ 280։

40 Հ. Մ. Բարթիկյան, Միքայել Իտալիկոսի «Ներբողյանը» և Կիլիկիայի հայոց առաջին թագավորի խնդիրը (ՊԲՀ, 1984, № 4, էջ 221)։

41 Հովհաննես Սկիլիցեսը սխալմամբ Գագիկ Բ-ին Հովհաննես-Սմբատի որդին է համարում։ Իրականում նա Աշոտ Դ-ի, Հովհաննես-Սմբատի եղբոր որդին էր։

42 Հովհաննես Սկիլիցես, էջ 147։

տակ գտնվող ամրոցները, քաղաքներն ու գյուղերը հռոմայեցիների կայսեր [սեփականություն] են»[43]։

Ինչպես վերևում ասվեց, խնդիրը հանգամանորեն ուսումնասիրել է Կ. Յուզբաշյանը։ Բայց մի շարք հարցերում, մեր կարծիքով, հեղինակը հանգել է ոչ համոզիչ եզրակացությունների, որոնց վրա անհրաժեշտ ենք գտնում հատուկ կանգ առնել։ Նախ, ἄρχων τῶν ἀρχόντων — իշխանաց իշխան տիտղոսը. Կ. Յուզբաշյանը դա համարում է «բյուզանդական պատվաստիճան, որ տրվում է կայսրության կողմից հայոց մեկ իշխանի և, ցանկության դեպքում, ետ է վերցվում և տրվում մի ուրիշի, որ տվյալ պահին Հայաստանում կարող է լինել միայն մեկ «արքոնների արքոն»[44]։ Ἄρχων τῶν ἀρχόντων ամենևին էլ բյուզանդական պատվաստիճան չէ, այլ հայոց իշխանաց իշխան տիտղոսի հունարեն թարգմանությունը[45]։ Այն բյուզանդական արքունիքի կողմից չի տրվում, այլ նրա կրողն այդպիսին է ճանաչվում կայսրության կողմից։ Ոչ մի փաստ չունենք, որ այդ պատվաստիճանը կայսրությունը որևէ մեկից «ետ է վերցրել» և, առավել ևս, «ուրիշին տվել»։ Մենք վերևում տեսանք, որ Կոստանդին Ծիրանածինի գրքում միաժամանակ հիշվում են երկու ἄρχων τῶν ἀρχόντων-ներ — իշխանաց իշխաններ, Բագրատունին և Արծրունին։ Իր անհամոզիչ միտքը հաստատելու համար Կ. Յուզբաշյանը որոշում է անգամ կոնկրետ թվականը՝ 929 թ., երբ Բագրատունիների իշխանաց իշխան պատվաստիճանը «տրվել է» Արծրունիներին։ Սա պատահական թվական չէ, այլ Աշոտ Բ-ի մահվան տարեթիվը։ Աշոտը պետք է մեռներ, որպեսզի բյուզանդական արքունիքը Վասպուրականի Գագիկ Արծրունուն դարձներ իշխանաց իշխան՝ մեկին, միայն մեկին։ Կ. Յուզբաշյանը գրում է, որ Բյուզանդիայի համար Աշոտ Բ Երկաթն էր վերջին Բագրատունին, որ կրում էր «արքոնների արքոն» կոչումը։

Ինչպես հայտնի է, Կոստանդին Ծիրանածինի «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» գրքում որևէ թվական չկա։ Հիշյալ աշխատության երկրորդ գրքի 48-րդ գլուխը՝ «Այլազգիներին ուղարկվող նամակների վերնագրերը» շարունակ «նորոգվել է», նկատի առնելով տվյալ ժամանակի իրողությունը։ Եթե Վասպուրականի իշխանի տիտղոսը «այժմ իշխանաց իշխան» է, նշանակում է ավելի վաղ բնագրում «իշխանաց իշխան» չէր, այլ «իշխան»։ Եթե Բուլղարիայի վեհապետի մասին գրված է, որ նա «իշխան» է, բայց «վերօերս», նրան հասցեագրված նամակում «գրվում է ...Բուլղարիայի թագավորին», դա նույն բանի մասին է վկայում։

«Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» գիրքը մեզ հասած տեսքով գրվել է 956—957 թթ. ոչ առաջ։ Ասել է՝ այդ տեքստն է Կոստանդին Ծիրանածինն ընձեռել իր արտաքին գործոց գրասենյակին՝ հօգտագործումն։ Եթե այդպես է, ապա ընդունել Կ. Յուզբաշյանի տեսությունը՝ տվյալ պահին մեկ իշխանաց իշխանի առկայության մասին, նշանակում է, որ Կոստանդին Ծիրանածինը թյուրիմացության մեջ է գցում արտաքին գործոց նախարարության գրասենյակի աշխատողներին՝ ցույց տալով, որ Հայաստանում կա երկու իշխանաց իշխան։ Եթե նույն Կ. Յուզբաշյանի կարծիքով Բագրատունիները 929-ին դադարել են իշխանաց իշխան լինելուց, ապա բյուզանդական արքունիքի համար ի՞նչ դարձան, սովորական իշխա՞ն։ Սխալ կլինի պնդել, որ Բյուզանդիան նրանց այլևս ոչ մի նամակ չի հղել։ Իսկ սովորական իշխանին հասցեագրված նամակը կարո՞ղ էր երբեք սոլիդանոց ոս-

43 Կոստանդին Ծիրանածին, էջ 11։

44 Կ. Ն. Յուզբաշյան, Ռոմանոս Լեկապենոս կայսեր անհայտ հասցեատերը (ՀՍՍՀ ԳԱ Լրաբեր հաս. գիտ., 1974, № 1, էջ 41—42), նույնի՝ Армянские государства эпохи Багратидов. с. 85.

45 Որ ἄρχων և իշխեմ բայերը ծածկում են իրար, գրել էին դեռևս Հայկազյան լեզվի բառարանի հեղինակները, նույնպես և՝ ἄρχων, և՝ իշխան գոյականները։ Կ. Յուզբաշյանի մենագրության մեջ սակայն ճիշտ է ասված, որ ἄρχων-ը հայկական իշխանի պատճենումն է (էջ 66)։

կե կնիք կրել։ Հայաստանի մնացած ութ իշխաններին ուղարկվող նամակները և ոչ մի սոլիդի կնիք չէին կրում։ Ասել է՝ Բագրատունիներին նո՞ւյնպես։ Բայց չէ՞ որ հայտնի է, որ նրանք ստանում էին երեք սոլիդանոց կնիքով նամակներ։

Ընդել, որ Հայաստանում տվյալ պահին կարող է լինել միայն մեկ «արքոնների արքոն», նշանակում է չգիտենալ կամ անտեսել կայսրության, այդ թվում և Բյուզանդական կայսրության հիմնական սկզբունքներից մեկը՝ «բաժանիր, որ տիրես»։ Բյուզանդիայի համար անհրաժեշտ էր Հայաստանը չլատված տեսնել, և ոչ միասնական մի տերություն։ Նա կուզենար իրար դեմ լարել տարբեր իշխանավորներին, որպեսզի պղտոր ջրի մեջ ձուկ որսար։ Պատահակա՞ն է, որ Բագրատունի և Արծրունի իշխանաց իշխաններին (թագավորներին) ուղարկվող բյուզանդական արքունիքի նամակներին կցված ոսկե կնիքը նույն՝ երեք սոլիդ կշիռն ուներ։ Եթե մեկը մյուսից տարբերվեր, ապա պիտի նշանակեր, որ Բյուզանդիան Հայաստանի գերագույն տեր է ճանաչում նրանցից մեկին։ Պետք է հավասար կշիռ ունենար, որ երկուսի միջև առաջնության մասին վեճը միշտ բորբոքված մնար։ Դա չէ՞ր պատճառը, որ Աշոտ Բ-ն իրեն «շահնշահ» եռչեց, ոոպեսզի ինքը լինի համայն Հայաստանի գերագույն վեհապետը։ Այդ «շահնշահի» մեջ հայերը և բյուզանդացիները տարբեր իմաստ էին դնում։ Բագրատունիները դրա տակ «արքայից արքա» էին հասկանում, բյուզանդացիները՝ պարզապես «իշխանաց իշխան», որպիսիք կարող էին մի քանիսը լինել։

«Բաժանիր, որ տիրես» սկզբունքը բյուզանդական տրքունիքը Հայաստանի տարբեր իշխանությունների նկատմամբ գործադրում էր և այլ ճանապարհներով։ Լավագույն փաստը Տարոնի իշխան Գրիգորին մագիստրոսի՝ օտարերկրացուն պարգևվող բարձրագույն պատվաստիճանն էր և վերջինիս հասնող տարեկան տասը լիտր (720) ոսկեդրամը և տասը լիտր արծաթը։ Այս ճանապարհով Բյուզանդիան մեկ քարով երկու նապաստակ խփեց, ոչ միայն Տարոնի իշխանավորների միջև թշնամություն սերմանեց, այլև՝ Տարոնի իշխանի և հայկական այլ իշխանությունների ղեկավարների։ Կոստանդին Ծիրանածինի վկայությամբ, «կայսեր (Լևոն Զ-ի) դեպի Տարոնի իշխանը ցուցաբերած սիրալիրությունը Վասպուրականի իշխան Գագիկի, վրաց կուրապաղատ Ատրներսեհի և իշխանաց իշխան Աշոտի (իրականում երեքն էլ այն ժամանակ թագավորներ էին հռչակված—Հ. Բ.) նախանձը գրգռեց, նախանձ, որ գնալով բորբոքվեց։ Նրանք բողոքեցին կայսեր (Ռոմանոս Ա Լեկապենոսին—Հ. Բ.), թե ինչի՞ համար Տարոնացին միայն պիտի կայսերական ռոճիկ ստանա, իսկ իրենք բոլորը՝ ոչ։ Նրանք հարց էին տալիս. «Նա մեզանից ի՞նչ ավել ծառայություններ է մատուցում և կամ մեզանից ինչո՞վ է ավել օգուտ տալիս հռոմայեցիներին։ Հետևաբար պետք է, որ կա՛մ մենք էլ նրա նման ռոճիկ ստանանք, կա՛մ թող նա էլ չստանա այդ պարգևը»[46]։ Ահա այս ձևով Բյուզանդիան Տարոնին զրկեց նաև հայկական պետական այլ միավորումների հնարավոր աջակցությունից, եթե դրա անհրաժեշտությունն առաջանար։ Տարոնը բյուզանդական ագրեսիայի դիմաց մնաց մեն-մենակ և ի վերջո զոհ գնաց։

Վերջապես, իրականությանը չի համապատասխանում Կ. Յուզբաշյանի պնդումը, թե «սույն տիտղոսի մեզ հայտնի բոլոր կրողները Հայաստանցի թագավորներ են, ...հիմք չկա ենթադրելու, որ բյուզանդական արքունիքը, խախտելով ավանդույթը (sic!) ..., այդ տիտղոսը շնորհեր ոչ հայաստանցուն»[47]։ Ո՛չ, հիմք կա։ Բյուզանդիան այդ տիտղոսով էր դիմում նաև դրոշարար ամիրաներին[48]։

---

46 Կոստանդին Ծիրանածին, էջ 7։

47 ՀՍՍՀ ԳԱ Լրաբեր, հաս. գիտ., 1974, № 1, էջ 39։

48 Տե՛ս R. L. **Menager**, Amiratus—'Αμηρᾶς. L'Emirat et les origines de l'Amirauté (Xe—XIIIe siecles), Paris, 1960 (apud: Byzantinische Zeitschrift, Bd. 54 (1961) p. 200).

Բյուզանդական կայսեր համար հարևան և ոչ հարևան պետությունների ղեկավարները կոչվում էին իշխան, իշխանաց իշխան, նաև կուրապաղատ, էքսուսիոկրատոր, էքսուսիաստես, եթե խոսքը վերաբերում էր Արևելքին։ Ռեքս, պրինցեպս էին անվանվում Արևմուտքի վեհապետները։ Նրանք կայսեր համար «որդի» էին, «հոգեկան որդի» կամ «եղբայր»։ Եթե խոսքը վերաբերում էր Հռոմի պապին, ապա նա կայսեր «հոգեկան հայրն» էր։ Կոստանդնուպոլսի պատրիարքի համար հայոց կաթողիկոսը «սիրելի եղբայր» էր։ Կոստանդնուպոլսի պատրիարք Նիկողայոս Միստիկոսը Հովհաննես Դրասխանակերտցուն դիմում է հետևյալ կերպ. «յաւէտ սիրելի եղբօր մերում՝ Յովհաննու կաթողիկոսի Հայոց Մեծաց»[49]։

Կայսրության հասկացողությամբ «որդի» էր իրենից այս կամ այն չափով վասալական կախման մեջ գտնվողը, հավասարազոր պետության (միայն քրիստոնյա) ղեկավարը կայսեր «եղբայրն» էր կամ «հոգեկան եղբայրը»։ Սաքսոնիայի, Բավարիայի, Գալլիայի, Ֆրանկիայի և Գերմանիայի ռեքսերը կայսեր «հոգեկան եղբայրներն» էին։ Մուսուլմանական տերությունների ղեկավարները, օրինակ, Եգիպտոսի ամիրապետը, կայսեր «սիրելի բարեկամն» էր։ Այդպիսին էր և Հնդկաստանի վեհապետը։ Մեծ Հայքի (Բագրատունի) վեհապետը կայսեր «հոգեկան որդին» էր, որ հավանաբար տարբերվում էր սովորական «որդուց», թեև Աշոտ Բ Երկաթը, «մինչդեռ էր ի Հռովմայեցւոց տերութեանն՝ ապա մեծաւ՟ շնորհակալութեամբ և բարեխորհուրդ ծառայական խոստմամբ խնդրէ հրաժեշտ դառնալոյ անդրէն ի հայրենի տէրութիւնն ի կայսերէ»[50]։ «Ծառայական խոստմամբ» նշանակում է վասալական կախմամբ։ Եթե նկատի առնենք X դ. սկզբում Հայաստանում տիրող ծանր կացությունը, Աշոտի հոր՝ Սմբատ թագավորի նահատակությունը Յուսուֆ ամիրայի կողմից, ապա Բյուզանդիայի օգնությանը դիմողը կարող էր նման խոսքեր ասած լինել։ Այդպիսին էր վիճակը և Սմբատի կենդանության օրոք։ Ըստ Դրասխանակերտցու, կայսր Լևոն Զ-ն «մեծ Ւաճ զայն այն էր», այսինքն՝ Սմբատը, «զի որդի սիրելի կայսր զՍմբատ իւր անուանիւր»[51]։

«Հոգեկան որդի» էին նաև Ալանիայի իշխանը, Բուլղարիայի իշխանը մինչև «թագավոր» կոչվելը։ Թագավոր կոչված ժամանակ նա արդեն «սիրելի որդի» էր, ինչպես Աշոտ Ա Բագրատունին[52] և Սմբատ Ա Բագրատունին[53]։ Աշոտ Գ Ողորմածը, ինչպես տեսանք, «հոգեկան զաւակ» էր։ Ինչ վերաբերում է հայոց թագավորին, ապա բյուզանդական կայսրը նրա համար «հայր» էր։ Սմբատ Ա Բագրատունին բյուզանդական կայսր Լևոն Զ-ին դիմում է «իբրև վեհագունի քան զինքն և hor hարազատի»[54]։

Իր հերթին Բագրատունի թագավորը «հայր» էր վրաց թագավոր Ատրներսեհի և եգերացվոց թագավոր Կոստանդինի համար։ Սմբատը վրաց կուրապաղատ Ատրներսեհին «թագ կապեալ... կացուցանէ զնա թագաւոր վրաց աշխարհին և երկրորդ իւրոյ տերութեան զնա հաստատէ»[55]։ Բյուզանդիան Ատրներսեհին ոչ մի անգամ թագավոր չի կոչել, այլ «Իբերիայի կուրապաղատ»։ Ինչ վերաբերում է եգերացվոց թագավորին, ապա նա էլ թագավորական կոչումը ստացավ Սմբատից. «Զգեստաւորէ զնա թագաւորական զգեստու և դնէ խոյր ոսկի ընդելուզեալ մարգարտով ի գլուխ նորա, և ականա-

49 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 266։

50 Նույն տեղում, էջ 292։

51 Նույն տեղում, էջ 159։

52 Նույն տեղում, էջ 143։

53 Նույն տեղում, էջ 200։

54 Նույն տեղում։ Հարցի մասին ընդհանրապես տե՛ս Hélène Ahrweiler, L'idéologie politique de l'Empire Byzantin, Paris, 1975. p. 46—47.

55 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 184։

կուռ ոսկի կամար ածէ ընդ մէջ նորա»[56]: Կոստանդին թագավորը «միապետեալ զիւր սեպհական տէրութիւնն, ի բազում հնազանդութիւն և մտերմական ծառայութիւն համախոհութեան զինքն արքային Սմբատայ բերէ սակս հայրաքուն նախախնամութեան նորա առ նա»[57]. Երբ Կոստանդինը փորձում էր Սմբատի առանձին տարածքներին տիրանալ, վրաց թագավոր Ատրներսեհը պախարակեց նրան, որպեսզի նա «ոչ շամբուշ մտօք ընդ վեհս քան զինքն հակառակիլ»[58]:

Վերևում նշվեց, որ խալիֆան Աշոտ Ա Բագրատունուն ուղարկեց «թագ թագաւորական և զգեստս թագաւորականս», նույնպես և նրա հաջորդ Սմբատ Ա-ին. «...ապա թագ արքայութեան նմա բերեալ մատուցանի յիշխանէ անտի Իսմայէլեանն Ափշնէ, որ յԱտրպատականի՝ ի հրամանէ ամիրապետին իւրեանց. ընդ նմին և ոսկիակուռ զգեստ, և նժոյգս իբրև օդապարիկս ի զարդս և ի զէնս ոսկիակուռս պճնապայծառս»[59]: Երկրորդ անգամ, այս անգամ Ափշինի մահից հետո, խալիֆան, «երևելի զգեստ արքունական, և թագ արքայական և կամար ակնակապ ի համակ ոսկւոյ, և սուսեր պատուական և երիվարս օդագնացս իմն կազմուածով զինուց և զարդուց առաքէ Սմբատայ»[60]:

Սա հասկանալի է. ամիրապետի իրավասությանն է վերաբերում հարևվան երկրի վեհապետին թագավոր ճանաչել կամ ոչ: Բայց ինչպե՞ս բացատրենք հետևյալ փաստը: Սմբատ Ա-ին թագ է ուղարկում և Ատրպատականի ամիրա Յուսուֆը: Ամիրան այդ իրավունքն ունե՞ր: Նամանավանդ եթե նկատի ունենանք, որ «ոստիկանն Յուսուփ ղայսու ժամանակաւ յապստամբութիւն զինքն զինեալ ընդդէմ ամիրապետին մեծի»[61]: Նույն Յուսուֆը Գագիկ Արծրունու և Սմբատ Ա-ի միջև սեպ խրելու համար «տայր նմա (Գագիկին— Հ. Բ.) թագ արքայական և պատիւս և պարգևս արքունական, ի քակտումն միաբանութեան նոցա»[62]: Երբ Գագիկը գնաց Ատրպատական՝ Յուսուֆի մոտ, «կրկին թագիւ առ ի նմանէ պսակեալ»[63]: Հովհաննես Դրասխանակերտցին չի նշում, որ դա կատարվեց ամիրապետի հրամանով: Ասել է՝ տրվածը պարզ թագ-չալմա էր և ոչ թագավորական ճանաչում, որ սովորական մի ամիրայի իրավունքը չէր:

Եզրափակենք. Բյուզանդական կայսրությունը ճանաչելով հայկական պետությունը, այդուհանդերձ, այն չճանաչեց որպես թագավորական իշխանություն: Ընթերցողի մեջ թող չստեղծվի այն տպավորությունը, թե ով ընդունում է Բյուզանդիայի կողմից Աշոտ Ա-ին թագ ուղարկելու վարկածը, նա «հայրենասեր» է, իսկ չընդունողը՝ պակաս կամ ոչ «հայրենասեր»: Հայրենասիրության հարց չկա այստեղ, կա բյուզանդական կայսերական իդեան, որը չի բխում ո՛չ Հայաստանի և ո՛չ այն ժամանակվա բոլոր պետությունների ու նրանց վեհապետների ցանկությունից: Յուրաքանչյուր վեհապետ իրավունք ուներ իր երկրում կրել իր ցանկացած տիտղոսը, բայց կայսրությունը դրան ո՛չ կարևորություն էր տալիս, ո՛չ էլ հաշվի առնում: Մակեդոնական հարստության հիմնադիր Վասիլ Ա-ն հազիվ թե կայսերական իդեան, առաջին անգամ լինելով, խախտեր հօգուտ Աշոտ Ա-ի, որը բյուզանդական կայսեր համար «որդի» էր ու «ծառա», և հազիվ թե իրեն հավասարազոր համարեր Աշոտ Բագրատունուն: Կայսերական իդեայի գոյությունը ժխտելը նշանակում է աճպարարությամբ զբաղվել:

56 Նույն տեղում, էջ 200:
57 Նույն տեղում, էջ 202:
58 Նույն տեղում, էջ 200:
59 Նույն տեղում, էջ 147:
60 Նույն տեղում, էջ 193:
61 Նույն տեղում, էջ 203:
62 Նույն տեղում, էջ 209:
63 Նույն տեղում, էջ 212:

Բայց դա ամենևին չի նշանակում, որ կայսրության համար Հայաստանի կշիռը երկրորդական էր։ Նա շատ ավելի ծանր էր կշռում, քան Արևելքի և Արևմուտքի բոլոր պետությունները, բացառյալ արաբական խալիֆայությունը։ Բյուզանդական աղբյուրներում, հասկանալի է, այդ մասին ուղղակի փաստ գոյություն չունի, բայց հարցը կարելի է պարզել ստուգորեն բյուզանդական կառավարության՝ այդ պետությունների ղեկավարներին ուղարկվող պաշտոնական գրություններին կցված ոսկե կնիքի կշռով։ Բաղդադ, աբբասյան խալիֆային ուղարկվող գրության կնիքը կշռում էր չորս սոլիդ (դահեկան), այդքան էլ՝ Եգիպտոսի ամիրայինը։ Հաջորդը Բագրատունի և Արծրունի թագավորներն էին, կնիքը կշռում էր երեք սոլիդ։ Իբերիայի, Աբազգիայի (Աբխազիայի), ռուսաց, հունգարացիների, պեչենեգների վեհապետներին ուղարկվող գրությունների կնիքը կշռում էր երկու սոլիդ։ Այդքան էլ Արևմուտքի պետությունների ղեկավարներին՝ Հռոմի պրինցեպսին, Սարդինիայի իշխանին։ Իսկ մեկ սոլիդ[64] Ֆրանկիայի ռեքսին, Երջանիկ Արաբիայի տիրակալին*։

---

64 Կոստանդին Ծիրանածին, էջ 151—154։

* Շարունակությունը տե՛ս «Լրաբեր հասարակական գիտությունների», 1996 թ. № 2-ում։

## ԲՅՈՒԶԱՆԴԻԱՆ ԵՎ ՀԱՅ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ X—XI ԴԴ.

Հ. Մ. ԲԱՐԹԻԿՅԱՆ

*Բոլոր կայսրությունները՝ հին թե նոր, իրարից տարբերվում են էթնիկական կազմի բազմազանությամբ, սոցիալ-տնտեսական հարաբերությունների մակարդակով, մշակույթով, բնակչության մենտալիտետով*։ Մի բանում, սակայն, նրանք ունեն նմանություն. անհագուրդ ախորժակ նոր տարածքներ նվաճելու, ժողովուրդներ ենթարկելու, նրանց երիտասարդությանը զինվորագրելու՝ դարձյալ նորանոր տարածքներ ու ժողովուրդներ նվաճելու և հպատակեցնելու, նրանց հարստություններին տիրելու։*

*Եթե Հայաստանի երկրաքաղաքական դիրքը նպաստել է արտաքին աշխարհի հետ կապեր հաստատելուն, վերջինիս տնտեսական ու մշակութային հարստություններին առնչվելուն, ապա քաղաքական առումով միանգամայն բացասական դեր է խաղացել։ Բոլոր աշխարհակալ տերությունները, ապա և հետամնաց քոչվոր ցեղերը՝ Աքեմենյան, Պարթևական, Սասանյան, Սեֆյան Պարսկաստանը, թուրքմենները, սելջուկները՝ Արևելքից, Ասորեստանը, արաբական խալիֆայությունը՝ հարավից, հոները, խազարները՝ հյուսիսից, վերջապես մակեդոնացիները, հռոմայեցիները, բյուզանդացիները՝ Արևմուտքից, իրենց նվաճումներն իրականացնելիս պիտի անցնեին Հայաստան անունը կրող այդ միջանցքից, և այդ երկիրը, որն Աստված-Եհովան ընտրել էր իր երկրային դրախտը հաստատելու համար, նրա բնակիչների համար պիտի վերածվեր իսկական դժոխքի։*

*Բյուզանդական կայսրության՝ Հայաստանը նվաճելու քաղաքականությունը գործադրվում էր դեռ վաղ միջնադարից, երբ Հռոմեական կայսրությունն աստիճանաբար վերածվում էր Բյուզանդական կայսրության։ 591 թ. բաժանմամբ, ինչպես ասվեց սկզբում, գրեթե ամբողջ Հայաստանը կայսրության սահմաններում էր, և մինչև վերջն էլ նա այդ տարածքը սեփական էր համարում։ Նա համատացած էր, որ IX դ. վերջից չի նվաճում արաբական խալիֆայության տիրապետության տակ գտնվող Հայաստանը, այլ ջանում է վերստին տիրել ժամանակին կորցրած հողերի, վերահաստատում իր տիրապետությունը։*

*Բոլոր կայսրություններն անխտիր, այդ թվում և բյուզանդականը, իրենց զավթողական նպատակներն իրականացնելու համար գործի էին դնում մի շարք միջոցներ։ Առաջինը և հիմնականը, պարզ է, զինական ուժն էր, բացահայտ ագրեսիան։ Երբ այն չէր գործում հակառակորդի դիմադրությունը կոտրելու համար, կիրառվում էին երկու այլ միջոցներ։ Նախ՝ հակառակորդի շրջանում թշնամանք ու հակասություն սերմանելը՝ հռոմեական հայտնի «բաժանիր, որ տիրես» սկզբունքը։ Ապա՝ պետական ահաբեկչությունը։ Հայաստանի նվաճումն իրականացնելու, հայկական պետականությունը վերացնելու և Հայաստանը կայսրության մի նահանգը դարձնելու գործում Բյուզանդական կայսրությունը X—XI դդ. օգտագործեց բոլոր այս երեք միջոցները։*

*Ինչպես հայտնի է, Բյուզանդիայի առաջին զոհը Տարոնի իշխանությունն էր։ Այստեղ, ինչպես վերևում ասվեց, կայսրությունը կիրառեց «բաժանիր, որ տիրես» սկզբունքը, ապա և, հավանաբար, ահաբեկչությունը։ Սկզբում նա թշնամություն բորբոքեց իշխան Գրիգորի և նրա եղբայր Աբու Ղանիմի միջև, Գրիգորին շնորհելով մագիստրոսի՝ օտարերկրացուն պարգևվող բարձ-*

* *Սկիզբը տե՛ս «Լրաբերի» 1996, № 1-ում։*

րագույն պատվաստիճանը և այդ պատվաստիճանին հասնող տարեկան տասը լիտր ոսկին ու տասը լիտր արծաթը։ Այս ճանապարհով Բյուզանդիան ոչ միայն Տարոնի իշխանավորների, այլև Տարոնի իշխանի և հայկական մյուս իշխանությունների ղեկավարների միջև թշնամություն սերմանեց։ Տարոնում ներքին պայքարը շարունակվեց իշխան Գրիգորի որդիներ Բագրատի ու Աշոտի՝ մի կողմից, և Աբու Ղանիմի որդի Թոռնիկի միջև, մյուս կողմից, որը պատճառ դարձավ Տարոնի՝ երկու մասի բաժանվելուն։ Մեջտեղ եկավ հայ իշխանավորների (իշխան թե թագավոր)՝ Բյուզանդիայի օգտին իրենց տիրույթները «կտակելու» առաջին օրինակը։ Իշխան Աշոտը Տարոնը «կտակեց» կայսրությանը։ Հայտնի չէ, թե «կտակը» երբ կազմվեց, բայց հայտնի է, թե երբ «մեռավ» կտակողը։ Եթե «կտակը» կազմվելու և կտակողի վախճանի միջև ընկած ժամանակը շատ էր երկարում (ինչպես պատահեց Տայքի Դավիթ կուրապաղատի, ապա և, ինչու ոչ, Շիրակի թագավոր Հովհաննես-Սմբատի հետ), Բյուզանդիան կարողանում էր այդ ժամանակամիջոցը իր ցանկացածի չափ կրճատել։ Տարոնում Բյուզանդիան գործի դրեց վերևում նշված և երրորդ գործոնը՝ պետական ահաբեկչությունը. իշխան Աշոտին պարզապես թունավորելով մյուս աշխարհն ուղարկեց։ «Վախճանեցաւ Տարօնոյ իշխանն Աշոտ։ Եւ Տարօնոյ Հոռոմք տիրեցին»,— գրում է Ստեփանոս Տարոնացի Ասողիկը[65]։

Ընդունված է ասել, որ հայ իշխանավորների՝ իրենց տիրույթները կայսրությանը «կտակելու» պրակտիկան դավաճանություն էր հայ ազգի նկատմամբ։ Բայց մի՞թե այդ «կտակները» կամավոր էին։ Բյուզանդիան գտնվում էր իր հզորության գագաթնակետին, հայկական իշխանությունները ի վիճակի չէին դիմագրավելու կայսրության զինական ուժը։ Հայ իշխանավորներն այդ ճանապարհով ջանում էին երկարաձգել իրենց երկրի դատապարտված անկախությունը, թեև շատ լավ գիտակցում էին, որ «կտակի» հետ միաժամանակ ստորագրում են սեփական մահավճիռը։ Բյուզանդիայի համբերությունն անսահման չէր, որ սպասեր կտակողի բնական վախճանին։ Այն կարելի էր և արագացնել։

Տարոնի անկումից մինչև Տայքի կուրապաղատության նվաճումն ընկած ժամանակամիջոցում՝ 974 թ., Հովհաննես Ա Չմշկիկը փորձեց ներխուժել Հայաստանի տարածքը։ Աշոտ Գ Ողորմած թագավորի գլխավորությամբ հայկական միացյալ բանակը խանգարեց կայսեր ծրագրին։ Դրանից հետո Բյուզանդիան որդեգրում է Հայաստանին տիրելու նոր ուղեգիծ. այն նվաճել մաս առ մաս, շարքից հանել առաջին հերթին փոքր, ռազմական առումով թույլ իշխանությունները, վերջին հումկու հարվածը պահելով ամենից հզոր միավորման՝ Շիրակի Բագրատունիների թագավորության համար։

Հաջորդ «կտակը» վերաբերում է Տայքի կուրապաղատությանը։ Այն (սեփական մահավճռի հետ միասին) ստորագրեց Դավիթ կուրաղապատը, բայց քանի որ նա չէր շտապում մյուս աշխարհը գնալ, Բյուզանդիան ջանաց նրան օգնել։ Այստեղ էլ գործի դրվեց երրորդ գործոնը՝ պետական ահաբեկչությունը։ Հարցն այն է, որ Դավիթ կուրաղապատը դիտեր, թե ինչ ճանապարհով է Բյուզանդիան վերացնում իր քաղաքական հակառակորդներին և հակաթույն էր ընդունում։ Տեսնելով, որ թույնի միջոցով հնարավոր չէ Դավթին վերին Երուսաղեմ ուղարկել, Բյուզանդիան նրան խեղդամահ արեց։ Վրաց արքեպիսկոպոս Իլարիոնը, անկասկած, Բյուզանդիայի գործակալը երկրում, «ի կենդանարար մարմին և յարիւն Քրիստոսի դեղ մահու խառնեաց և... դնէր ի բերան սուրբ իշխանին զմասն խորհրդոյն խառնեցեալ մահաբեր դեղօք յանդիման Աստուծոյ ի մէջ եկեղեցւոյն։ Եւ գիտացեալ աստուածասէր իշխանին Դաւթի, ոչ ինչ խօսեցաւ բնաւ, այլ առեալ դեղ բժշկութեան շիջուցանել զցաւսն ի մարմնոյ իւրոյ։ Եւ անօրէն եպիսկոպոսն Իլարիոն դարձեալ բորբոքեցաւ ի չար խորհուրդսն իւր և մտեալ ի սենեակն՝ մինչև ննջէր բարեպաշտն Դաւիթ և խաղաղիկ ի քուն կայր, և առեալ նորա զբարձն ի սնարիցն դնէր ի վերայ

65 Ասողիկ, էջ 183։

բերանոյն Դաւթին և անկեալ սաստկապէս ուժգին ի վերայ նորա և շարշարանօք խեղդէր զաստուածասէր կուրաղապատն Դաւիթ»[66]։

Իբրև թե Վասիլ Բ-ն Իլարիոնին այդ արարքի համար Սև ծովում ջրահեղձ արեց։ Դե, գնա, գտիր նրա դիակը, համոզվելու համար, որ կայսրը իր կամքը կատարողին իրոք մահապատժի ենթարկեց։ Ամենայն հավանականությամբ Իլարիոնի աստիճանը դրանից հետո էլ ավելի բարձրացավ՝ անծայրածիր Բյուզանդիայի մի այլ շրջանում։ Կրկնվեց Տարոնի իշխանի հետ կատարվածը։ Անունը փոխելով, կարող ենք կրկնել Ասողիկի, Տարոնի մասին գրածը. «վախճանեցաւ կուրաղապատն Տայոց Դաւիթ։ Եւ Տայոց Հոռոմք տիրեցին»։

Շիրակի Բագրատունիների թագավորությունն արևմուտքից և հյուսիսից շրջապատելուց հետո Բյուզանդիան ձեռնարկեց այն պաշարել նաև հարավից, ամբողջությամբ աքցանի մեջ առնելու համար։ Այդ ծրագիրը իրականացնելու բարենպաստ պայմաններ կային։ 1016 թ. Վասպուրական էին ոտք դնում թուրքմեն բարբարոս ու քոչվոր ցեղերը՝ մահ ու սարսափ տարածելով։ Վասպուրականն օգնություն խնդրեց Բյուզանդական կայսրությունից։ Վասիլ Բ-ն Վասպուրական ուղարկեց բուլղար ռազմագերիներից բաղկացած մի զորամաս, որի խնդիրը, սակայն, երկրի պաշտպանությունը չէր, այլ պայմաններ նախապատրաստելը՝ Վասպուրականի թագավորությունը վերացնելու և երկիրը Բյուզանդական կայսրության սահմաններում ներառելու համար։ Բուլղարները «եկեալ զաշխարհս յաւեր դարձուցին»[67]։ Սենեքերիմ թագավորը, որին անկասկած հայտնի էր Տարոնի և Տայքի իշխանների ճակատագիրը, չսպասեց, որ իրեն թունավորեն բյուզանդական գործակալները. Վասպուրականը ստիպված հանձնեց Վասիլ Բ-ին և հաստատվեց Սեբաստիայում։

Բագրատունյաց թագավորությունն արդեն աքցանի մեջ էր։ Հարավից՝ Վասպուրականի կատապանությունը, հյուսիսից՝ Իբերիայի (Տայքի) բյուզանդական նահանգը, արևմուտքից՝ Տարոնի, Հարքի և Ապահունիքի բյուզանդական նահանգները։ Թվում է, թե Շիրակը գոնե հյուսիս-արևմուտքից և արևելքից պիտի ապահով լիներ, բայց այդպես չէր դժբախտաբար։ Տաշիր-Ձորագետի թագավորությունը ընկել էր Բյուզանդիայի ազդեցության տակ և կատարում էր կայսրության թելադրանքները։ Այլ կերպ չի կարելի բացատրել նրա թագավոր Դավիթ Անհողինի արշավանքները Շիրակի թագավորության տիրույթների վրա։ 1041 թ. «բազում անցումն եղև տանս Հայոց ի ձեռն Դաւթի Անհողինի... Սա յարուցեալ ի վերայ թագաւորութեան Հայոց և մատնեաց ի սուր և ի գերութիւն զգաւառս բազումս... անթիւ կրակով այրեցան ի զօրաց նորա»[68]։ Մի քանի տարի անց Դավիթ Անհողինը կրկնեց իր դատապարտելի արարքը Բագրատունիների նկատմամբ։ «Յայնժամ յաղդմանէ չարին,—գրում է Մատթեոս Ուռհայեցին,—կրկին շարժում լինէր Յունաց դաւաճանութեամբ և կեղծաւորութեամբ սուտ քրիստոնէին Դաւթի Անհողինին»[69]։ Արևելքից Բյուզանդիայի դրդմամբ Բագրատունիների վրա հարձակվեց Դվինի ամիրա Աբու -լ- Ասվարը, իսկ հարավից՝ Ատրպատականի այլազգիները։

Ինչպես տեսնում ենք, գործի էր դրվել բյուզանդական դիվանագիտության զինանոցի առաջին գործոնը. Հայաստանը նվաճել զենքի ուժով՝ սեփական և ուրիշի։ Սակայն Բյուզանդիան Շիրակի Բագրատունիների հարցում գործի

66 Մատթեոս Ուռհայեցի, էջ 39։

67 Պատմութիւն Արիստակիսի Լաստիվերտցւոյ, աշխ. Կ. Յուզբաշյանի (այսուհետև՝ Արիստակես Լաստիվերտցի), Երևան, 1963, էջ 24—25։ Դեպքը արձանագրված է նաև բյուզանդական աղբյուրներում։ Հովհաննես Սկիլիցեսը ցույց է տալիս, որ Վասիլ Բ կայսրը Մողլենայում գերված բուլղարներին Վասպուրական ուղարկեց (Հովհաննես Սկիլիցես, էջ 84)։ Հարցի մասին մանրամասն տե՛ս Р. М. Бартикян, О болгарском войске в Васпуракане и последних годах царства Арцрунидов (ՀՀ ԳԱ Լրաբեր, 1973, № 3, էջ 88—96)։

68 Մատթեոս Ուռհայեցի, էջ 84—85։

69 Նույն տեղում, էջ 88։

դրեց և մյուս միջոցները՝ «բաժանիր, որ տիրես» սկզբունքը և պետական
ահաբեկչությունը։

1021 թ. Տրապիզոնում հայոց թագավոր Հովհաննես-Սմբատի և Վասիլ Բ-ի միջև կնքվել էր պայմանագիր, որի համաձայն, հայոց արքան իր թագավորությունը կտակում էր Բյուզանդիային։ Միջնադարյան պատմիչները (և ժամանակակից հեղինակները) դա բացատրում են Հովհաննես-Սմբատի թուլակամությամբ. Վասիլ Բ-ն պահանջեց «ի թագաւորէն Հայոց զԱնի և զԿարս»։ Ասել է՝ Շիրակի և Վանանդի թագավորությունները։ «Եւ Յովհաննէս որդին Գագկայ խորհեցաւ տալ վասն թուլութեան սրտի իւրոյ»[70]։ Հարկավ, այստեղ սրտի թուլության հարց չկար։ Ինչպես ասվեց, այն ժամանակ Բյուզանդիային և ոչ մի հարևան պետություն չէր կարող ընդդիմակայել։ Հովհաննես-Սմբատը այդ ձևով փորձեց երկարաձգել իր երկրի անկախությունը, հույս ունենալով, որ Վասիլ Բ-ին հաջորդածը Հայաստանի նկատմամբ այլ քաղաքականություն կորդեգրեր։

Բագրատունյաց Հայաստանում այս ժամանակ կային երկու թագավոր՝ հիշյալ Հովհաննես-Սմբատը և նրա եղբայր Աշոտը։ Առաջինի մահվան դեպքում, ըստ պայմանագրի, Շիրակը պիտի դառնար Բյուզանդիայի սեփականությունը։ Հովհաննեսը ժառանգ չուներ։ Այս հանգամանքը շատ ձեռնտու էր կայսրությանը։ Աշոտին իր կողմը գրավելու համար Բյուզանդիան օգտագործեց իր դիվանագիտական զինանոցում ունեցած մի միջոց ևս՝ խնամիական կապերի հաստատումը հայ իշխանների և թագավորների հետ։ Հայտնի է այդպիսի մի միջոցառում Տարոնի իշխանության առնչությամբ։ Տարոնի իշխանի ավագ որդի Բագարատին Լևոն Զ կայսրը կնության տվեց մագիստրոս Թեոփիլակտոսի քրոջը, իսկ Գրիգորի եղբայր Աբու Ղանիմին՝ պրոտոսպաթար Կոստանդնի դստերը։ Այս անգամ, Հովհաննես Սկիլիցեսի վկայությամբ, «Ռոմանոս կայսրը (Ռոմանոս Գ Արգիրոս, 1028—1034 թթ.—Հ. Բ.) իր զարմուհուն մեծ օժիտով կնության տվեց Մեծ Հայքի էքսուսիարխին»[71] (δεδωκε δε και την οἰκείαν ἀνεψιὰν ὁ βασιλεὺς 'Ρωμανὸς μετὰ πολλῶν εδνων εἰς ευνὴν τῷ τῆς Μεγάλης 'Αρμενίας ἐξουσιάρχῃ)[72]:

Բյուզանդական աղբյուրներում ոչ մի անգամ Հայաստանի որևէ թագավորության, որևէ իշխանության գլուխը էքսուսիարխ չի կոչվել։ Դեռ ավելին, Ալանիայի իշխանը պաշտոնական գրություններում կոչվել է էքսուսիոկրատոր (ἐξουσιοκράτωρ), Աբազգիայինը (Աբխազիա)՝ էքսուսիաստես (ἐξουσιαστής): Հասկանալի է, այս երկու տիտղոսները իմաստով իրարից չեն տարբերվում, պարզապես զանազանելու համար են ձևվել։ Եվ ահա, այս երկուսի կողքին հանդես է գալիս և մի երրորդը՝ էքսուսիարխ (ἐξουσιάρχης): Արդ, ո՞վ է նա, Մեծ Հայքի այդ (Μεγάλη 'Αρμενία) էքսուսիարխը։ Միակ անձնավորությունը, որ ուսումնասիրողի մտքին է գալիս, պարզ է, Հովհաննես-Սմբատն է։ Հենց այդպես վստահորեն գրում է Կ. Յուզբաշյանը. «Հովհաննես Սկիլիցեսի հաղորդման համաձայն, Ռոմանոս Արգիրոսը իր զարմուհուն կնության տվեց Հովհաննես-Սմբատին» (բյուզանդացի հեղինակը ոչ մի անուն չի նշում), և դա, ըստ նրա, հայոց թագավորի «երկրորդ ամուսնությունն էր»։ «Երկրորդ», որովհետև 1021—1022 թթ. «հայոց թագավորն արդեն կորցրել էր որդուն»[73], կարծես, որդու մահը նշանակում և ենթադրում է նաև կնոջ մահը։

Հովհաննես-Սմբատը և նրա եղբայր Աշոտը երկուսն էլ կոչված են թագավոր. «Երկոքին հարազատ եղբարքն Աշոտ և Յովհաննէս, որ ունէին զթագա-

70 Նույն տեղում, էջ 49 (այս և հետագա ընդգծումները մերն են—Հ. Բ.)։

71 Հովհաննես Սկիլիցես, էջ 108։

72 Ioannis Scylitzae, Synopsis historiarum, editio princeps, recensuit Ioannes Thurn. Berolini et Novi Eboraci, 1972, p. 385.

73 К. Н. Юзбащян, Армянские государства эпохи Багратидов, с. 159.

**ւորութիւն մերոյ աշխարհիս»**,—գրում է դեպքերին ժամանակակից պատմիչ Արիստակես Լաստիվերտցին[74]։ Հարցի վերաբերյալ ամենաարժեքավոր տեղեկությունները տալիս է Մատթեոս Ուռհայեցին։ «Եւ յայնժամ սուրբ հայրապետն Պետրոս,—գրում է նա,—և իշխանքն ամենայն եկին առ Աշոտ և մեծաւ երդմամբ նստուցին զԱշոտ դրուց աշխարհին՝ **թագաւոր ամենայն տանն Հայոց**, և Յովհաննէս նստցի **թագաւոր ի քաղաքն յԱնի**»[75]։

Եթե բյուզանդական ականավոր պատմիչի՝ Հայաստանին և հայերին վերաբերող տվյալ շարադրանքը քառացի համընկնում է անվանի հայ պատմիչի շարադրանքին, ապա իրավունք ունենք պնդելու, որ առաջինիս աղբյուրներն արժանահավատ են ու վստահելի։ Հովհաննես Սկիլիցեսը Հովհաննես-Սմբատին անվանում է ոչ թե թագավոր կամ իշխանաց իշխան, Հայաստանի գերագույն տեր, այլ ընդամենը Անիի կառավարիչ «Անիի տոպարխ»[76] (τὸ Ἀνίου τοπάρχης)[77], կամ «Անիի շրջանին տիրող»[78] (ὁ τῆς τοῦ Ἀνίου κυριεύων χώρας)[79], այսինքն՝ «թագաւոր ի քաղաքն յԱնի»։ Որով, **Մեծ Հայքի էքսուսիարխը**, որի անունը Հովհաննես Սկիլիցեսը չի տալիս, պարզ է, Մատթեոս Ուռհայեցու **«թագաւոր ամենայն տանն Հայոց»** Աշոտն է։ Սրանից մի հետաքրքիր եզրակացության էլ ենք հանգում։ Բյուզանդական կառավարությունը, երկու եղբայրների միջև թշնամությունը խորացնելու միտումով, Աշոտին ճանաչել է **Մեծ Հայքի**—Μεγάλη Ἀρμενία-ի, այսինքն՝ «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» գրքում հիշվող **Բագրատունյաց պետության** ղեկավար, այսինքն, ճանաչել է «սուրբ հայրապետ» Պետրոսի և ամենայն հայ իշխանների վճիռը։ Այսինքն, Բյուզանդիան Աշոտի համար ստեղծեց նոր, Ալանիայի էքսուսիոկրատոր և Աբազգիայի էքսուսիաստես տիտղոսներին համահնչուն և հավասարազոր էքսուսիարխ տիտղոսը։ Μεγάλη Ἀρμενία-ի էքսուսիարխը պարզապես հայերի հասկացողությամբ Մեծ Հայքի, «ամենայն տանն Հայոց»-ի թագավորն է։

Այլ հարց է, հարկավ, որո՞նք էին Հովհաննես-Սմբատ և Աշոտ հակամարտության դրդիչ ուժերը։ Հնարավոր բան չէ, որ այստեղ էլ բյուզանդական կառավարության մատը խառնված չլիներ։ Պատահակա՞ն է, որ իր եղբոր՝ Հովհաննես-Սմբատի դեմ պայքարում Աշոտը զինական ուժ ստացավ հենց Բյուզանդիայից։ Նա «թողեալ զաշխարհն՝ երթեալ հասանէ ի դուռն թագաւորին Հոռոմոց. և հաճոյ եղեալ նմա՝ խնդրէր զօրս յօգնականութիւն, և առեալ գայ անցանէ յաշխարհն իւր»[80]։ Որով, ամենայն հավանականությամբ, Ռոմանոս Արգիրոս կայսրը խնամիացավ հենց Աշոտի հետ[81]։ Բայց Աշոտը կայսրության համար երկսայրի սուր էր։ Նա Բյուզանդիային այնքան ժամանակ էր պետք, ինչքան պայքարում էր եղբոր դեմ և թուլացնում ու ջլատում Հայոց թագավորությունը։ Երբ երկու եղբայրների միջև վեճը մի կերպ հարթվեց, իսկ Աշոտն էլ «զօրանայ քան զամենեսեան, որ յառաջ քան զնա էին. մինչ զի բազումք ի մեծամեծացն՝ զհայրենի տեղիս իւրեանց ի նա թողեալ,

74 Արիստակես Լաստիվերտցի, էջ 55։
75 Մատթեոս Ուռհայեցի, էջ 10։
76 Հովհաննես Սկիլիցես, էջ 146։
77 Ioannis Scylitzae, Synopsis historiarum, p. 435.
78 Հովհաննես Սկիլիցես, էջ 146։
79 Ioannis Scylitzae, Synopsis historiarum, p. 435.
80 Արիստակես Լաստիվերտցի, էջ 28։
81 Այդ «ակտը» կատարվեց Ռոմանոս Արգիրոս կայսեր օրոք։ Նա թագավորել է 1028—1034 թթ.։ Դեպքը, ըստ Հովհաննես Սկիլիցեսի քննական բնագրի հրատարակչի, տեղի ունեցավ 1030 թ., այսինքն, բյուզանդական կայսեր զարմուհին չէր կարող Գագիկ Բ-ի մայրը լինել, քանի որ Գագիկը 1041 թ. արդեն 15 տարեկան էր։ Եթե անգամ ամուսնությունը տեղի ունեցած լիներ Ռոմանոս կայսեր թագավորության առաջին տարում, ապա Գագիկը 1041-ին պիտի 12 տարեկանից ավելի չլիներ։

նմա զանձինս կամօք ի հնազանդութիւն ետուն»[82], կայսրությունը ստիպված փոխում է իր դիրքը նրա նկատմամբ, քանզի Աշոտը միշտ կարող էր հանդես գալ որպես հայոց միահեծան թագավոր, և որ պակաս կարևոր չէր, ուներ ժառանգ՝ Գագիկ անունով: Թեև Հովհաննեսի մահվան դեպքում Բյուզանդիան կարող էր Տրապիզոնի դաշնագրության վրա հենվելով պահանջել Մեծ Հայքը, բայց կար և մի այլ պայմանագիր՝ Հովհաննեսի և Աշոտի միջև կնքված, որի համաձայն Հովհաննես-Սմբատի մահից հետո Անին ժառանգում է Աշոտը: Հենց դա էր մտահոգում կայսրությանը: Եվ հանկարծ տեղի ունեցավ այն, ինչ, եթե նկատի ունենանք Բյուզանդիայի շահերը, պիտի կատարվեր: «Ի միում ամի գրաւեալ յայստեացս՝ բարձան ի կենաց երկոքին հարազատ եղբարքն Աշոտ և Յովհաննէս, որ ունէին զթագաւորութիւն մերոյ աշխարհիս»[83]: Նախ, մեռավ Աշոտը. բյուզանդական աղբյուրներում գրված սցենարի համաձայն այդպես էլ պիտի լիներ, քանզի հենց նա էր կայսրության համար տվյալ պահին ամենից վտանգավորը: Նա Բյուզանդիայի հետ որևէ պայմանագիր չէր կնքել և ոչ մի պարտավորություն չէր ստանձնել, դեռ ավելին, ինչպես ասվեց, նա ուներ ժառանգ: Աշոտի մահվան ժամանակ նրա որդի Գագիկը ընդամենը տասնհինգ տարեկան էր, այսինքն, անչափահաս էր: Բյուզանդիան շտապում էր, քանի դեռ Գագիկը չէր հասել թագ կապելու տարիքին: Աշոտից մի քանի ամիս անց «մեռավ» և Հովհաննես-Սմբատը: Եթե պետք լինի պատասխանել այն հարցին, թե ում էր ձեռնտու նրանց մահը, այդ բանն անելը դժվար չէ: Հարկավ, Բյուզանդիային: Հետևաբար, նրանց «մահը» ոչ այլ ինչ էր, քան կայսրության կողմից կազմակերպված պետական ահաբեկչության ակտ: Թե ինչ կատարվեց դրանից հետո, հանրահայտ է: Բյուզանդացիները տիրեցին Շիրակին, վերացրին Բագրատունյաց թագավորությունը:

Այդ բոլորից հետո Բյուզանդիայի հետաքրքրությունների շրջանակներում մնաց սոսկ Վանանդի թագավորությունը, որին տիրանալն արդեն դժվար գործ չէր, մանավանդ թափ էին ստացել սելջուկների նվաճումները, և Վանանդը միայնակ ոչինչ անել չէր կարող: 1064 թ. Ալփ Արսլանը գրավել էր Անին և Վանանդի վերջին թագավոր Գագիկը հաջորդ տարին՝ 1065-ին, իր թագավորությունը հանձնեց կայսրությանը:

Այսպիսով, շուրջ մեկ հարյուրամյակի ընթացքում Բյուզանդիան, գործի դնելով կայսրություններին հատուկ երեք գործոնները՝ բացահայտ ագրեսիա, «բաժանիր, որ տիրես» հին հռոմեական սկզբունքը և պետական ահաբեկչությունը, տիրացավ գրեթե ողջ Հայաստանին, ոչնչացրեց հայոց պետականությունը, լուծարքի ենթարկեց հիսուն հազար մարտիկներից բաղկացած հայկական բանակը[84], վերացրեց ֆիզիկապես, կայսրության հեռուները ցրիվ տվեց հայ զինվորականներին ու զինվորներին, փաստորեն ճանապարհ հարթելով վաչկատուն վայրենաբարո ցեղերի առջև: Հոռոմները «մի առ մի քակեալ հանին ՚ի մէջ զզօրականսն ի տանէն Հայոց, զորս հանին յարկաց և ի գաւառաց և բարձեալ խափանեցին զաթոռ թագաւորութեանն Հայոց. քակեցին զցանկ պահպանութեանն զօրաց և զօրավարաց... Հոռոմք յայն ջանս ջանացան, որ լուր զպարիսպ ամրութեան տանս Հայոց քակեալ կործանեցին և Պարսիկք (թուրքերին—Հ.Բ.) ի վերայ արձակեցին սրով... Մինչ Պարսիկք անտէր տեսին զամենայն արևելք»[85]:

Այդպիսին էր ահա Բյուզանդական կայսրության քաղաքականությունը հայկական պետականության նկատմամբ: Հարց է ծագում. ինչպիսի՞ն էր նրա դիրքը հայ ժողովրդի նկատմամբ: Տարածված է այն կարծիքը, որ Բյուզանդիան (նաև Սասանյան Պարսկաստանը) ձգտում էին հայ ժողովրդին ուծացնել, ձուլել, ասել է՝ դարձնել հույն (կամ պարսիկ): Այդպիսի կարծիք իրավունք ունի արտահայտելու վիպասանը, որ կոչված է հայրենասիրական զգացումներ սեր

82 Արիստակես Լաստիվերտցի, էջ 28:
83 Նույն տեղում, էջ 55:
84 Հովհաննես Սկիլիցես, էջ 180:
85 Մատթեոս Ուռհայեցի, էջ 135—136:

մանել հայ ժողովրդի, հատկապես երիտասարդության մեջ, ցույց տալու, որ մենք չդարձանք զրադաշտական, որպեսզի չձուլվենք պարսիկների հետ, կամ քաղկեդոնիկ, որպեսզի հույն չդառնանք։ Բայց այդ միտքն իրավունք չունի արտահայտելու պատմաբան-հետազոտողը, քանզի այն հեռու է ճշմարիտ լինելուց։ Ոչ մեկը, և ոչ մյուսը հայ ժողովրդին պարսիկ կամ հույն դարձնելու նպատակներ չէր հետապնդում։ Պետք է գիտենալ, որ միջին դարերում ազգի, ազգության զգացումը այսօրվա նման հզոր չէր, հզոր էր կրոնի, դավանանքի զգացումը։ Եթե ազգության զգացումը այնքան հզոր լիներ, ապա հույները իրենց գահի վրա չէին հանդուրժի հայազգի կայսրերի ամբողջ մի շարան։ Եվ ոչ միայն կայսրերի, այլ պատրիարքների, սրբերի, նաև զորավարների և նահանգապետների, որոնց թիվը չկա։

Միջնադարյան հույնը կրոնին զոհաբերեց անգամ իր հարազատ «հելլեն» էթնոնիմը, իրեն կոչեց «հռոմայեցի» (այսօր էլ հույն ժողովրդի շրջանում «ռոմիոս» նշանակում է հույն), քանզի «հելլեն» արդեն նշանակում էր հեթանոս, կռապաշտ։

Դիցուք, եթե Հազկերտ Բ-ի կրոնական քաղաքականությունը Հայաստանում հաջողությամբ պսակվեր, եթե իրոք նա նպատակ ուներ ողջ հայությանը զրադաշտական դարձնել, հայերս գլխովին զրադաշտականություն ընդունեինք, պիտի պարսի՞կ դառնայինք։ Բայց չէ՞ որ 301 թվականից մի հազարամյակ առաջ զրադաշտական էինք, պարսիկների հետ դավանում էինք նույն կրոնը։ Մեր Արամազդը նրանց Ահուրամազդան էր, Անահիտը՝ նրանց Անահիտը, մեր Վահագնը՝ նրանց Վարաթրագնան։ Բայց մենք պարսիկ չդարձանք։ Միամտություն է կարծել, որ եթե պարսիկները նպատակ ունենային հայ ժողովրդին ձուլել, մարզպանության տարիներին, այսինքն՝ Հայաստանում, Սասանյան Պարսկաստանի տիրապետության ժամանակ, արգելքներ չէին հարուցի հայերեն գիր ու գրականության առաջացմանն ու զարգացմանը, ազգային դպրոցների բացմանը, Աստվածաշնչի թարգմանությանը՝ իրենց ոխերիմ թշնամու լեզվից (հունարենից), եկեղեցիների կառուցմանը, կաթողիկոսության գոյությանը, պիտի հանդուրժեին, որ մարզպանը և սպարապետը լինեին հայեր[86]։

Նույնը պիտի ասել և Բյուզանդական կայսրության վերաբերյալ։ Աղբյուրներում դեռ X դարից հայտնի և գլխավորապես Ակնի շրջանում բնակվող հայ-քաղկեդոնիկների շառավիղները՝ հայ-հոռոմները, որոնք 1923 թ. գաղթեցին Հունաստան, մինչև օրս հայախոս են։ Նրանց գյուղը (Էվբիա կղզում) կոչվում էր Նոր էգին (Նոր Ակն)։ Նրանք զանգվածաբար բնակվում են և Թեսաղոնիկեի Դիավատա արվարձանում։

Վաղ միջնադարում Ասորիքում և Եգիպտոսում հիմնականում հույներ էին բնակվում, որոնք միաբնակներ էին։ Արդ, հույն եկեղեցին պայքարելով նրանց դեմ և ջանալով նրանց քաղկեդոնիկ դարձնել, այդ հույներին ի՞նչ պիտի դարձներ։ Չէ՞ որ նրանք արդեն հույն էին, ձուլման հաշիվ չկար։ Եթե Բյուզանդիան ցանկություն և մտադրություն ունենար հայերին ձուլելու, ապա թույլ կտա՞ր որ նրանք կոմպակտ համայնքներ կազմեն իր տարածքում[87]։ Դյուրախիոնի (այժմ՝ Դուրոս, Ալբանիայում. Ադրիատիկի ափին) արքեպիսկոպոս Կոստանդին Կավասիլասի (XII դ.) Կիտրոսի եպիսկոպոս Հովհաննեսին տված հարցին, թե «Հայերն իրենց բնակած քաղաքներում իրավունք ունե՞ն եկեղեցիներ կառուցելու, պետք է նրանց արգելե՞լ այդ բանն անել, թե՞ թողնել իրենց ցանկացածը կատարել», եպիսկոպոս Հովհաննեսը պատասխանեց. «Քրիստոնյաների (հունադավանների—Հ. Բ.) շրջաններում ու քաղաքներում ի սկզբանե անտի թույլատրելի է այլալեզու և այլադավան ժողո-

---

86 Մանրամասն տե՛ս Մորուս Հասրաթյանի կարևոր հոդվածը. «Պատմական Իրանը և Հայաստանը» (Հայկազյան հայագիտական հանդես, հ. է, Պեյրութ, 1979, էջ 9—32)։

87 Ոչ հեռու անցյալում Բաքվում գոյություն ուներ Արմենիքենդ թաղամասը, Թիֆլիսում՝ Հավլաբարը, կոմպակտ հայությամբ շրջաններ։ Ո՞ւր մնացին դրանք այսօր։ Բայց Բեյրութում գոյություն ունի Բուրջ Համուդը...

վուրդների, այն է հրեաների, հայերի, իսմայելացիների, հագարացիների և այլ նմանների բնակությունը, բայց քրիստոնյաների հետ՝ ոչ խառն, այլ զատ։ Որով յուրաքանչյուր ցեղի համար առանձնացվում են թաղեր՝ կամ քաղաքների ներսում, կամ դրսում, բայց առանձնացված։ Նրանց բնակավայրերը չպետք է իրենց սահմաններից դուրս գան։ ...Որով հայերն էլ իրենց որոշված շրջաններում տաճարներ էլ են կառուցում և իրենց հերձվածող արարողությունները կատարում, ոչ ոք իրավունք չունի նրանց այդ բանն արգելել։ ...Սակայն եթե նրանք դուրս գան իրենց հատկացված թաղից, ոչ միայն այդ բանն անել նրանց չի թույլատրվում, այլև իրենց կառույցները, ինչպիսիք էլ դրանք լինեն, ենթակա են քանդման»[88]։

Ասվածը վկայում է, որ Բյուզանդիան ձուլարար քաղաքականություն չէր տանում ոչ միայն հայերի, այլև իր երկրում բնակվող այլ ժողովուրդների նկատմամբ։ Բյուզանդիայի հայերին ձուլելու քաղաքականություն վարելու մեջ մեղադրող մասնագետներն ու ոչ մասնագետները կարծես համոզված են, թե կայսրության սահմաններում բնակվող այլազգիները միայն հայերն էին։ Անլուրջ բան է ենթադրել, որ կայսրությունը մտադիր էր և կարող էր ձուլել, հույն դարձնել Բյուզանդիայի սահմաններում բնակվող հայերին, իտալացիներին, իսպանացիներին, ասորիներին, արաբներին, սլավոններին, բուլղարներին, հրեաներին, ղպտիներին, հաբեշներին։ Բյուզանդիան թույլ էր տալիս, որ անգամ հայ-քաղկեդոնիկները իրենց արարողությունները հայերեն կատարեն։ Նիկոն Սևլեռնցին (XI դ.) հայ-քաղկեդոնիկների՝ ծագերի, մասին խոսելիս, նրանց համարում է «մեր (հույների—Հ. Բ.) հոգևոր եղբայրները»։ «Նրանք քրիստոնյաների ուղիղ հավատն են դավանում, և սխալ չէ նրանց հետ հաղորդվել, հաղորդություն տալ նրանց և ստանալ նրանցից, քանզի տարբերությունը լեզվի ճարցում չէ (իմա ազգության—Հ. Բ.), ...այլ ճավատի ճշմարիտ խոստովանության»[89]։

Ասվածը լավագույն ապացույցը չէ՞ միջին դարերում ազգայինի համեմատությամբ դավանանքի առաջնային լինելուն։ Շարունակենք։ Սուրբ Սաբբան, հիշված Նիկոնի վկայությամբ, քաղկեդոնիկ հայերին թույլ տվեց «պատարագը ճայերեն կատարել»[90]։ Ալեքսանդրիայի պատրիարք Մարկոսի (XII դ.) հարցին «Անվտա՞նգ է արդյոք, որ ուղղափառ (քաղկեդոնիկ—Հ. Բ.) ասորիներն ու ճայերը պատարագը իրենց լեզվով մատուցեն կամ պե՞տք է ստիպել նրանց, որ այն ամբողջությամբ հունարեն կատարեն», եկեղեցական կանոնների նշանավոր մեկնաբան, Անտիոքի պատրիարք Թեոդորոս Վալսամոնը (մեռ. 1195 թ.) պատասխանեց. «Եթե նրանք հունարեն լեզվին չեն տիրապետում, ապա կարող են իրենց լեզվով պատարագ մատուցել»[91]։ Պատահական չէ Մատենադարանում և արտասահմանի գրապահոցներում հայ-քաղկե-

---

[88] Γ. Α. Ρ α λ λ η και Μ. Π ο τ λ η, Συνταγμα τῶν θειων και ιερων κανονων, τόμ. Ε', σελ. 415: Իրենց «գետտո»-յից դուրս կառույցները (այդ թվում և եկեղեցիները) քանդելու մասին կարգադրությունը օրենք չէր։ Միքայել VIII Պալեոլոգոս կայսեր՝ 1277 թ. Վենետիկի դոժի հետ Վենետիկի առևտրականներին տրված առանձնաշնորհումների վերաբերյալ կնքած պայմանագրում ցույց է տրված, թե կայսրը նրանց օգտագործման համար տալիս է Թեսաղոնիկե քաղաքի «եկեղեցին, որն անցյալում պատկանում էր ճայերին, և նրա շուրջ գտնվող տները, մեկը՝ որպես կոնսուլի բնակարան, մյուսը՝ որպես նրա խորհրդականների բնակարան, և մեկը՝ որպես Վենետիկի հանրապետության ապրանքների պահեստ» (տե՛ս F. Miklosich, I. Müller, Acta et diplomata graeca medii aevi sacra et profana vol. III, Vindobonnae, 1865, p. 89). Հազիվ թե Վենետիկի կոնսուլը համաձայներ բնակություն հաստատել հայոց «գետտո»-յում։ Ասել է՝ հայոց եկեղեցին քաղաքի կենտրոնական մասում պիտի գտնվեր։

[89] Из «Тактикона» Никона Дивногорца. Описание греческих рукописей монастыря св. Екатерины на Синае, т. 1, под редакцией и с дополнениями В. Н. Бенешевича, СПб, 1911, с. 588.

[90] Նույն տեղում, էջ 588—589։

[91] Γ. Α. Ρ α λ λ η και Μ. Π ο τ λ η, Συνταγμα των θειων και ιερων κανονων, τομ. Δ', σελ. 452—453.

դոնիկների հայերեն դրված կրոնական բովանդակությամբ բազմաթիվ ձեռագրերի առկայությունը։

Հայերը, այդ թվում և ամենաբարձր պաշտոններին տիրացած հայազգի անձնավորությունները, Բյուզանդական կայսրության սահմաններում չէին հրաժարվում (ինչպես ոմանք այժմ) իրենց ազգային անձնանուններից։ Բարձր պաշտոնների ու դիրքի տիրանալուն դա չէր խանգարում...[92]։ Ասենք, որ ոչ ոք էլ նրանցից դա չէր պահանջում։ Վարդանը Βαρδάνης էր մնում, Վահանը՝ Βαάνης, Վարդը՝ Βάρδας. Արշավիրը՝ Ἀρσαβήρ, Մուշեղը՝ Μουσελές, Բագարատը՝ Παγκράτιος, Սմբատը՝ Συμβάτιος, Գուրգենը՝ Κουρκούας, Κουρκένης. Վարագտիրոցը՝ Βαριστεροτζής՝ Գնունին՝ Γουνιτζιάτζης. Արշակը՝ Ἀρσάκης. Արտավանը՝ Ἀρτάβανος. Տաճատը՝ Ταζάτης. Թոռնիկը՝ Τορνίκιος, Դավթակը, Ταυτούκας. Փոքրիկը՝ Πουκρίκας. Ներսեսը՝ Ναρσῆς. Վասակը՝ Βασάκιος. Համայակը՝ Μαϊάκης: Ցուցակը կարելի է անվերջ շարունակել։

Դեռ ավելին, Բյուզանդիայում հայերը հպարտ էին զգում, որ հայ են կամ հայկական ծագում ունեն։ Քաջ, արի, խիզախ բառերի հոմանիշն էր «հայը»։ Թեոփիլոս կայսեր (829—842 թթ.) ժամանակ գործած բյուզանդական նշանավոր հայազգի զորավար Մանուիլի մասին Թեոփանեսի Շարունակողը գրում է, թե նա «շատ խիզախ մարդ էր, բոլոր հակառակորդներին քաջ հայտնի, քանզի նա ծննդով հայ էր»[93]։ Անգամ Կոստանդին Ծիրանածին կայսրը իր պապի՝ մակեդոնական հարստության հիմնադիր Վասիլ Ա-ի մասին հպարտությամբ գրում էր, թե նա «ազգությամբ հայ» էր, և որպեսզի նրան էլ ավելի վեհացնի, ավելացնում էր, թե նա իբր Արշակունի էր[94]։

Այլ էր հարցը, իհարկե, խավարամիտ ու մոլեռանդ կղերի շրջանում։ Հայոց միաբնակությունը վերջինիս մեջ հայերի հանդեպ առաջացրեց խորը ատելություն, որ մինչև անգամ «հայը» համարվում էր չար ոգի, վհուկ, ցեղանունը դրանց հոմանիշը դարձավ։ Վաղագույն բյուզանդական հեղինակներից այդ մասին վկայողը XI դ. փիլիսոփա Միքայել Պսելլոսն է[95]։

Եթե քաղկեդոնիկ դառնալով մենք հույն պիտի դառնայինք, ապա վրացիները, VII դ. սկզբին հրաժարվելով միաբնակությունից, դարձան քաղկեդոնիկ, ինչո՞ւ չձուլվեցին։ Եթե կայսրության պաշտոնական դավանանքի ընդունումը ազգության վերացման վտանգ էր սպառնում, բուլղարները IX դ. կեսերին իրենց ամենաոխերիմ թշնամու՝ Բյուզանդիայի դավանանքը կընդունեի՞ն, իրենց իշխան Բորիսն էլ իրեն ժամանակակից քրիստոնյա կայսեր Միքայել անունը կստանա՞ր։ Կընդունեին Հռոմի կաթոլիկ դավանանքը, որը պապի միսիոներները եռանդագին քարոզում էին և որտեղից ձուլման վտանգ, ապա և քաղաքական ինքնուրույնության վտանգ ամենևին չկար։ Չպետք է մոռանալ, որ միաբնակ դավանանքն էլ հայ մտքի արգասիքը չէր, այն էլ հույների ստեղծածն էր։ Եվ հայոց եկեղեցին քաղկեդոնիկների դեմ իր պայքարում հույն հեղինակների գործերն էր օգտագործում։ VII դ., Կոմիտաս կաթողիկոսի օրոք, մենք ստեղծեցինք «Կնիք հավատոյ» խորագիրը կրող գիրքը՝ եկեղե-

---

92 Կարիք չկար դառնալ Թորոսովիչ, Իվաշկևիչ, Բերնատովիչ, Զախարիասևիչ, Էմինեսկու, Կապրելով, Կիրկորով, Կևորկով, Մարչանիշվիլի, Թումանիշվիլի, Պալիաշվիլի, Լազարև, Մելիքով, Թումանով, Տարասով, Բաքաև, Տրուայա և այլն, և այլն։

93 Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 15, Բյուզանդական աղբյուրներ, գիրք Ե, Թեոփանեսի Շարունակող, թարգմ. բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1990, էջ 65։

94 Կոստանդին Ծիրանածին, էջ 33։

95 **Michaelis Pselli**, Dialogus de daemonum energia. Migne, Patrologia graeca, t. 122, col. 857—860. Ավանդությունը գոյություն ունի մինչև օրս։ Տե՛ս Π. Ν. Παπαγεωργίου, Περί των σημασιών του ρήματος ἀρμενίζω. Ἀθηνᾶ, 24 (1912), σελ. 459—468; Philip P. Argenti and H. J. Rose, The Folklore of Chios, t. I—II, Cambridge University Press, 1949.

ցու նշանավոր հայրերի երկերի քաղվածքներից կազմված ժողովածու, ի պաշտպանություն միաբնակ դավանանքի։ Բոլորն էլ հույն հեղինակներ են, բյուզանդական եկեղեցու կողմից հարգված և սրբագործված. Բարսեղ Կեսարացի, Գրիգոր Նազիանզացի, Գրիգոր Նյուսացի, Կյուրեղ Ալեքսանդրացի, Աթանաս Ալեքսանդրացի, Եպիփան Կիպրացի և շատ ու շատ ուրիշներ։

Հարց է ծագում. Բյուզանդական կայսրությունը, Հայաստանին տիրելով, հայոց պետականությունը վերացնելով վերջապես ի՞նչ էր հետապնդում։ Ինչպես արդեն ասվեց, հիմնականում երկու նպատակ. եկամուտների նոր աղբյուր ձեռք բերել և իր բանակը առաջնակարգ զինվորներով համալրել։ Կայսրության եկամուտները հիմնականում ստացվում էին բնակչությունից գանձվող հարկերից՝ գլխավորապես առևտրականներից ու արհեստավորներից։ XI—XII դդ. սահմանագլխին արաբ գիտնական Մարվազին ցույց է տալիս, որ Բյուզանդիայի «պետական եկամտի մեծ մասը կազմում են առևտրականներից գանձվող հարկերը»[96]։ Պատահական չէ, որ բյուզանդական տիրապետության ժամանակներից մեզ հասած Անիի երեք վիմագիր արձանագրություններից երկուսը նվիրված են բնակչությունից գանձվող հարկերին[97]։ Բյուզանդացիները «ընդ հարկիւ կամէին արկանել» անգամ հայ եկեղեցին[98]։ Կայսրության համար պակաս կարևոր չէր հայերի զինվորագրումը։ Դեռևս Պրոկոպիոս Կեսարացին է խոսում Բյուզանդիայում ծառայող հայ զինվորների «որակի» մասին. «Նախկինում,—գրում է նա,—պալատի պահպանության համար առանձնացվել էին երեք հազար հինգ հարյուրից ոչ պակաս զինվորներ, որոնց սքոլարիոս էին անվանում։ Ի սկզբանե անտի պետությունը սրանց վճարում էր շատ ավելի բարձր ռոճիկ, քան մնացած բոլոր զինվորներին։ Անցյալում կայսրերը սրանց ընտրության ժամանակ նկատի էին առնում մարդկանց արժանիքները և հայերին էին տալիս նախապատվությունը[99]։ IX—XI դդ. Բյուզանդիայի մղած բոլոր պատերազմներում հայ զինվորների և զինվորականների մասնակցությունն ու դերն ընդգծված է բյուզանդագիտական բոլոր աշխատություններում։ Նշենք նշանավոր բյուզանդագետ Շարլ Դիլի գնահատականը. «Բյուզանդիան պարտական է Հայաստանին հոյակապ զինվորներով, քանի որ հայկական զորամիավորումները X դարում համարվում էին բյուզանդական բանակի լավագույնները, դրա համար դժվար չէ հասկանալ, թե ինչու կայսրության կառավարությունը երազում էր ամբողջությամբ բյուզանդական ազդեցությամբ ներծծված հայերին իր հպատակները դարձնել»[100]։ Բայց խոսքը միայն զորամիավորումներին չէր վերաբերում։ Այդ զորամիավորումներից դուրս էին գալիս հոյակապ հրամանատարներ, որոնք ձեռք էին գցում անգամ կայսրության գահը։ Նշենք նաև անգլիացի անվանի բյուզանդագետ Ռ. Ջենկինզի գնահատականը. «IX դարի կեսերից մինչև XI դարի սկզբները քաջ և հավատարիմ զորավարների ցուցակում որպես միջին շրջանի բյուզանդական նյութական վեհության ճարտարապետներ նշանավոր դարձան վեց մեծ առաջնորդներ։ Նրանք են. Վասիլ Ա, Ռոմանոս Ա, Հովհաննես Գուրգեն (Կուրկուաս), Նիկեփոր Բ (Փոկաս), Հովհաննես Ա (Չմշկիկ) և Վասիլ Բ (Բուլղարասպան)։ Հանրահայտ է, որ բոլորն էլ հայկական ծագում ունեին... Հայոց այս ներթափանցումը, որը բյուզանդացիներին տալիս էր նրանց լավագույն այրուձին, նրանց ամենաամուր և կայուն մարտիկներին, ամենափայլուն զորավարներին, բնականաբար արա-

---

[96] V. Minorsky. Marwazi on the Byz atines. Melanges H. Gregoire, t. II, 1950, p. 462.

[97] В. Н. Бенешевич, Три анийские надписи XI в. из эпохи византийского владычества, СПб, 1921.

[98] Արիստակես Լաստիվերտցի, էջ 83։

[99] Պրոկոպիոս Կեսարացի, Գաղտնի պատմություն, թարգմանություն հին հունարեն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1987, էջ 114։

[100] Ш. Дпль, Основные проблемы византийской истории, М., 1947, с. 141.

դացավ, և բյուզանդական ուժը ի վերջո սկսեց հաջողություններ ձեռք բերել արևելքում արաբների հզորության դեմ»[101]։

Վերացնելով հայոց պետականությունը՝ Բյուզանդիան այդ փայլուն զորավարներին ու զինվորներին հեռացնում էր մայր հայրենիքից։ Նրանք պաշտպանում էին կայսրության շահերը Հայաստանից հազարավոր կիլոմետրեր հեռու՝ օտար ափերում։ Հայաստանը մերկացավ պաշտպաններից և երբ XI դ. առաջին կեսին Հայաստան և Փոքր Ասիա խուժեց թուրքական մրրիկն ու մորեխը, երկրում դիմադրող ուժ չկար։

Բյուզանդիան իր փոսը սեփական ձեռքով փորեց։

## ВИЗАНТИЯ И АРМЯНСКАЯ ГОСУДАРСТВЕННОСТЬ В X—XI вв.

Р. М. БАРТИКЯН

### Резюме

Великая Армения, приобретшая во главе с Багратидами после двухсотлетнего арабского владычества независимость (884 г.), Арабским халифатом была признана царством: Ашот I Багратид получил от халифа корону и другие инсигнии царя. Византия, верная императорской идее о существовании в мире одного василевса—византийского императора, продолжала называть Ашота I и последующих царей Армении архонтами архонтов (князями князей), что представляло собой греческий перевод армянского титула ишханац-ишхан. Свидетельство писавших четыре века спустя армянских историков Вардана Великого и Киракоса Гандзакеци о том, будто Василий I послал Ашоту I царскую корону и признал его царем, не подтверждается современными Ашоту I источниками и противоречит императорской идее о единственном в мире василевсе.

Экспансионистская политика Византии в X—XI вв. против Армении преследовала цель приобрести новые источники доходов налогообложением страны, эксплуатацией ее природных богатств, а также сформировать военный контингент из армян. Экспансия осуществлялась тремя путями: прямой военной агрессией, политикой «разделяй и властвуй» и государственным террором против армянских царей и князей. Не второстепенную роль играли и политические, по существу, браки между главами армянских княжеств и царств с царскими и княжескими семьями Византии, к чему стремилась сама империя.

Расхожее среди армянских исследователей мнение о том, что Византия, распространяя в Армении халкедонитское вероисповедание, преследовала цель ассимиляции, не соответствует действительности.

---

101 R. J. H. Jenkins, The Byzantine Empire on the Eve of the Crusades, London, 1953, p. 12.